# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир баная, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 10. 89



*Հանձնված է արտադրության 31.07.89 թ.: Ստորագրված է տպագրության 18.10.89 թ.: ՎՖ 02388: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61032: Պատվեր՝ 992: Գինը՝ 15 կոպեկ:*
*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 31.07.89 г. Подписано к печати 18.10.89 г. Формат 70×100 1/16. ВФ 02388. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3.0 уч.-изд. листа. Тираж 61032. Заказ 992. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ ՆԻԿՈՂԱՅՈՍ ՔՈԹԱՆՋՅԱՆ «Նատյուրմորտ»

**Ամենամեծ դու նահատակ,**
**ամենահայր,**
**ամենահայ...**
**Պ. ՍԵՎԱԿ**

Ահա պաշտելի ու նվիրական մի անուն, որը խորհրդանշում է բազմադարյան մի ժողովուրդ՝ իր հարուստ մշակույթով, իր տխուր ու դաժան ճակատագրով, իր տևական, բայց և հերոսական մաքառումներով, իր անկումներով ու թռիչքներով, իր անպատմելի բազում տառապանքներով ու խիզախումներով, իր մահվամբ ու մշտանորոգ հարությամբ: Քաղաքակիրթ ազգերի պատմության մեջ շատ չեն այն անհատները, որոնք իրենց հանճարի արտափայլումով, իրենց զարմանահրաշ հայտնագործությամբ ու թողած վաստակով վերակենդանացրել ու անմահացրել են իրենց իսկ ծնող ժողովրդին:

Ահա այդպիսի բացառիկ անհատականություններից է Կոմիտասը, որի մեծագործությունը կարելի է չափել ու գնահատել մաշտոցյան մեծագործության չափանիշներով միայն:

Կոմիտասը հայտնագործեց հայ տոհմիկ երգն ու երաժշտությունը, ուստի նա մեր ազգի հարազատ ու լուսապայծառ փառքերից մեկն է, որի կատարած գերմարդկային գործի արդյունքը հար ու նման է հանճարեղ տարոնացու հրաշագործությանը:

Հայոց պատմության վաղնջական ժամանակներից, մեր ժողովրդի սկզբնավորման օրերից իսկ սկիզբ առած, նրա հետ ապրած ու գոյատևած մեր երգը կար, ապրում էր նրա հետ, նրա շուրթերին, ավանդվելով դարեր շարունակ սերնդեսերունդ՝ սնուցելով մեր ազգի հոգին ու սիրտը: Սակայն այդ երգը, որի մեջ մեր հինավուրց ազգի հոգին ու նկարագիրը բյուրեղացած վիճակում վարագուրվել էր դարերի անթափանց մշուշով, սպասում էր, որ գա ու հայտնվի արարչագործ մի ձեռք և բաց անի այն, դուրս բերի դեպի լույս:

Եվ եկավ նա, ծնվեց մի ժողովրդի բեղուն արգանդից՝ ծնվեց անանշան Քյոթահիայում 1869 թվականի սեպտեմբերի 26-ին, բայց նա ծնունդն էր, իր իսկ խոստովանությամբ՝ Գողթն գավառի, ուստի և՝ վերակենդանացած շառավիղը Գողթան երգիչների, որոնք մինչև հինգերորդ դարը մեր թվարկության երգում էին գով-




Գործ՝ ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

քըն ու փառքը մեր աստվածների՝ ի լույս և ի զարմանս մեր մեծ Խորենացու: Նա սնվեց ու դաստիարակվեց Վաղարշապատի այդ նույն դպրոցում, որ բացել էին մեր մեծերը՝ Սահակը, Մաշտոցն ու Վռամշապուհը:

Կոմիտասը փայլուն կերպով ավարտելով Ս. Էջմիածնի հոգևոր ճեմարանի դասընթացը, Հայոց Հայրիկի հովանավորությամբ 1896 թվին մեկնում է Բեռլին և սովորում տաղանդավոր երաժշտագետ Ռիխարդ Շմիդտի մոտ և 1899-ին ճոխացած երաժշտական տեսական խորը գիտելիքներով վերադառնում է հայրենիք ու նվիրվում ազգային երգ-երաժշտության տարածման վսեմ գործին:

Կոմիտասը խիզախորեն սուզվեց հայոց պատմության մութ ու խավար դարերի անդունդներն անհատակ, որոնեց, գտավ և դուրս հանեց, ապա ինքնամոռաց նվիրումով, մարտիրոսական տքնությամբ ու հայրական գուրգուրանքով մաքրեց, զտեց, հղկեց ու դաշնավորեց և նրա բյուրեղային հայկականությունը հավաստող բոլոր հանգամանքներով՝ աստիճան առ աստիճան հրաշակերտեց հայ տոհմիկ երգի աշտարակը:

Մաշտոցի նման հայ երգի մեծ առաքյալը ևս իր սքանչելի գյուտից հետո շըրջեց ամբողջ Հայաստանում և ապա Եվրոպայում, տանելու իր մեծ ավետիսը համայն աշխարհին, տարածելու մեր երգ ու տաղի, մեր բան ու բառի հմայքն ու բույրը:

Սկսած 1901 թվականից, Կոմիտասն սկսում է պարբերաբար համերգներ կազմակերպել Վաղարշապատում, Երևանում, Թիֆլիսում, Բաքվում, ապա Բեռլինում, Փարիզում, Կ. Պոլսում, Կահիրեում, Ալեքսանդրիայում, Վենետիկում, Լոզանում և այլ քաղաքներում:

Այդ աննախընթաց համերգների հաջողության մասին գրվել են հիացական գըրախոսություններ հայ և օտար պարբե-

րականներում: Ահա դրանցից մի քանի տող.

—Ոչ ոք ինձ չի կարող չափազանցության մեջ մեղադրել, եթե ասեմ, որ այդ համերգը մի հեղաշրջում էր և իր հայտնությամբ զարմացրեց մեզ... (ֆրանսիացի հանրահայտ երաժշտագետ Լուի Լալուա):

1906 թվականին Փարիզում կայացած համերգից հետո կոմպոզիտոր Դեբյուսին բացականչում է մոտենալով Կոմիտասին.

— Հանճարեղ Հայր Կոմիտաս, Ձեր երաժշտական հանճարի առջև խոնարհվում եմ...

— Աստված մի Կոմիտաս էլ մեզ պարգևի, որպեսզի կարենա փրկել հելլենական երգն ու երաժշտությունը,— գրում է մի հույն քննադատ Կահիրեում կայացած համերգի առթիվ:

— Կոմիտասն ամբողջ արևելքի հըպարտությունն է ու փառքը,— գրում է մեկ այլ գրախոս ֆրանսիական լրագրերից մեկում:

Համերգային գործունեությունից բացի, դեռևս Բեռլինում ուսումնառության տարիներից սկսած, Կոմիտասը կարդացել է բազմաթիվ հրապարակային դասախոսություններ հայ գեղջուկ ու հոգևոր երաժըշտության հարցերի շուրջը: Այդ դասախոսություններին զուգակցում էին Կոմիտասի անզուգական կատարումները:

Կոմիտասն անհերքելի փաստերով կարողացավ ապացուցել և համոզել, որ հայ երաժշտությունն ունի ազգային ինքնատիպ նկարագիր և որ այդ երաժշտությունը իր դասական էությամբ զուգակշիռ է արևմտաեվրոպական դասական երաժըշտությանը և որն ապրելով բազում դարեր ու պատռելով դաժան դարերի անջրպետները, հարություն առած՝ այսօր ճառագայթում է կենդանի շնչով և հոսում է ինչպես լեռան հատակից բըխող սառնորակ մի վտակ, հոսում է իր կենսատու զորությամբ ու պարզությամբ:

Իր մի շարք արժեքավոր հետազոտություններով Կոմիտասը կարողացավ հերքել նաև մեր երաժշտության մասին գոյություն ունեցող այն թյուր և անհիմն կարծիքը, ըստ որի՝ «հայ երգը մելամաղձոտ է ու լալկան»: «Մինչդեռ հայ երաժշտությունը ոչ միայն մեղկ ու տխուր չէ, այլ համակ ուժ ու կենդանություն, ու իր մեջ կանուցանե փիլիսոփայությունն իսկ, ոգին իսկ իր ցեղին, որովհետև երաժշտությունն ամենեն մաքուր հայելին է ցեղին, ամենեն հարազատն ու կենդանին անոր բոլոր արտահայտությանց մեջ, կենդանի՝ որքան կենդանի է այդ ցեղը, ուժեղ՝ որքան ուժեղ է իրեն ծնունդ տվող ժողովուրդը»:

Կոմիտասի բազում դասախոսությունների մեջ առանձին նշանակություն և արժեք ուներ 1914 թվականի գարնանը Փարիզում գումարված Միջազգային երաժըշտագետների գիտաժողովում նրա կարդացած դասախոսությունը: Գիտաժողովին մասնակցող շուրջ չորս հարյուր երաժշտագետները հիացմունքով են ունկնդրել հայկական գեղջուկ երգի, հայ միջնադարյան խազերի, ինչպես նաև հայ երաժշտության շեշտադրության ու տաղաչափության մասին Կոմիտասի խիստ շահեկան զեկուցումը:

Փարիզի, Լոնդոնի, Բեռլինի թերթերը գիտաժողովի առանցքն ու հայտնությունը համարեցին Կոմիտասին: Կոմիտասի շնորհիվ հայ երգը սիրեց նաև օտարը: Այս հանգամանքը, իրոք, Կոմիտասի պատմական առաքելության կարևոր մեկ մասն է:

—Իմ երգչի կարողությունները մեկ նըպատակի կծառայեն, մեծ ժողովրդիս երգըն ու երաժշտությունը ծանոթացնել երաժշտական աշխարհին և ապացուցել, որ հայ ստեղծագործ ժողովուրդն սկըզբնական դարերեն ունեցեր է իր ինքնուրույն երգն ու երաժշտությունը,— գրում է Կոմիտասը:

Նա բացեց նաև մեր վարագուրված աչքերը մեր իսկ սեփական արժեքների հանդեպ, վերադարձրեց մերը մեզ: Նա լավ գիտակցեց, որ երաժշտությունը ոչ միայն ժողովրդի կյանքի ու նրա ներքնաշխարհի արտացոլումն է, այլ նաև մի զորեղ ազդակ նրա ազգային ինքնագիտակցության արթնացման ճանապարհին.

«Ամբողջ մտատանջությունս է հասցնել աշակերտներ, որոնք դպրոցներու մեջ տեղ գրավեն, նվիրվեն ազգային երաժըշտության ուսումնասիրության, տարածեն ժողովրդի մեջ ազգային երաժշտության ոգին, որպեսզի ժողովրդի մեջ ազգային երաժշտության խոսքը մարմնանա, և նրա ազդեցության տակ ժողովուրդը թոթափելով իր թույլ պատյանը, մտնե վերակենդանացման շավիղի մեջ»:

Կոմիտասը հայտնաբերեց նաև մեր երգի կատարման ոճը: Օժտված լինելով բնածին զարմանալի ձայնային տվյալներով, նա հայ երգի կատարողական ար-

վեստը հասցրեց զարմանալի աստիճանի: Այդ մասին են վկայում 1912 թվականին Փարիզում ձայնագրված նրա մի քանի երգերի կատարումները:

Այս տեսակետից Կոմիտասն իրավամբ հանդիսանում է երգեցողության մեր ազգային դպրոցի հիմնադիրը: Նրա ոգեղենացած ձայնը ձայնն է իր ցեղի, ձայն, որի ելևէջների մեջ կարելի է լսել ու տեսնել, զգալ ու ապրել մեր ժողովրդի բազմադարյան պատմությունը: Որովհետև այդ ձայնը «բուռն է ու մեղմ, բարձր է ու հեզասահ, վեհ է ու ազատ, ի հեռուստ է և ի խորուստ, մերթ մեղմիկ է իբր արձագանք, մերթ ուժգին է ու ավետավոր, մերթ սքանչացմամբ ու հիացական, մերթ ոգևոր ու սրտաբաց, մերթ ուրախական է ու մերթ անուն, մերթ հավատով ու ցնծագին, մերթ լայն է ու աղաչական, մերթ վստահ է ու ջերմեռանդն հոգվով...»:

Ահա Կոմիտասի կերտած հայ երգի կատարման ու մեկնաբանման էությունը: Վերը թվարկված հատկանիշների առկայությամբ պետք է երգվեն կոմիտասյան երգերը: Թվարկված այս հատկանիշների հայեցի անվանումները նա պատկանում են Կոմիտասի հանճարին՝ դուք այդ անվանումներին կհանդիպեք նրա ստեղծագործությունների մեջ:

Կոմիտասը նաև ապացուցեց, որ հայ երգն ունի ճիշտ նույն առանձնահատկությունները, ինչ ունի հայոց լեզուն:

«Ժողովուրդը երգում է այնպես, ինչպես խորհում և խոսում է նա»,— գրում է Կոմիտասը: Այստեղից էլ բխում է Կոմիտասի ստեղծագործության ակնաղբյուրը:

Հայ գեղջուկի շուրթերից քաղեց նա շուրջ 5.000 երգ ու տաղ, բայց ավաղ, դրանց միայն մի մասը հասցրեց մաքրել ու զտել իր հոգու և հանճարի մաքրամաքուր ավազանում, և դրանք նորից վերադարձրեց ժողովրդին՝ այդ երգի բուն ըստեղծողին՝ հայտարարելով, որ «ժողովուրդն է ամենամեծ ստեղծագործողը, գնացեք և սովորեք նրանից»: Կոմիտասը գտավ նաև հայ գեղջուկ երգին խիստ պատշաճ դաշնավորում: Կոմիտասյան երգերի նվագակցությունը կարծեք միահյուսված լինի մեղեդուն, և ամեն մի երգի մեջ խոսքը, մեղեդին ու նվագակցությունը ընկալվում են իբրև մեկ ամբողջություն:

Մի քանի խոսք Կոմիտասի երաժշտական ժառանգության մասին:

Հարուստ ու բազմազան է Կոմիտասի թողած երաժշտական ժառանգությունը, այն ընդգրկում է երաժշտական արվեստի գրեթե բոլոր բնագավառները՝ ինքնուրույն ստեղծագործություն, ժողովրդական երգերի հավաքում և մաքրազարդում անհարազատ ազդեցություններից, երաժշտագիտական բարձրարժեք հետազոտություններ, կատարողական լայն գործունեություն: Իսկ նրա գրի առած ու դաշնավորած երգերի ընդհանուր պատկերը այսպիսին է. գեղջկական-քնարական երգեր ու խմբերգեր՝ սիրո, կարոտի ու պանդխտության երգեր, աշխատանքային երգեր՝ հունձի, գութաներգի, կալերգեր, հորովելներ, ծիսական երգեր, որոնց մեջ առանձին արժեք ունեն հարսանյաց երգերի շարքը, դյուցազնական, հայրենասիրական ու քաղաքային երգեր և վերջապես միջնադարյան հոգևոր երգերի ու շարականների բարձրարվեստ ու հարազատ մշակումներ: Այս բոլորից բացի առանձին արժեք ունի նաև մեր ավանդական պատարագի կոմիտասյան բազմաձայն տարբերակը, որտեղ կան առանձին համարներ, որոնք կարող են մրցել համաշխարհային դասական հեղինակների բազմաձայն ստեղծագործությունների հետ: Կոմիտասը մշակել է բազմաձայն պատարագի մի քանի տարբերակ, սակայն դրանք, ի թիվս նրա մի շարք այլ ստեղծագործությունների, անհետ կորել են: Կոմիտասյան պատարագի միակ տարբերակը, որը հրատարակվել է 1933 թվականին Փարիզում, ամբողջական չէ, այն հիշողությամբ վերականգնել է Վարդան Սարգսյանը՝ Կոմիտասի ամենաբեղմնավոր ու տաղանդավոր աշակերտներից մեկը:

Կոմիտասը եղել է նաև տաղանդավոր խմբավար, նա կարողացել է կարճ ժամանակի ընթացքում երգչախմբեր կազմակերպել ու ելույթներ ունենալ:

Մեծ է նաև Կոմիտասի վաստակը երաժշտամանկավարժական ասպարեզում: Նա դասավանդել է և՛ Վաղարշապատում, և՛ Պոլսում ու նրա արվարձաններում: Ժամանակակիցները ջերմ սիրով ու ակնածանքով են հիշում իրենց սիրելի ուսուցչին: Խիստ արժեքավոր ու այժմեական են Կոմիտասի՝ մանկավարժության մարզում թողած տողերը:

«Երգեցողությունը սրտի հետ կապ ունի, որ ուղղակի հոգին կերթա, ուսուցիչ պարոններ և քույրեր, զգուշությամբ և

երկյուղածությամբ մոտեցեք ղաստիարակության գործին: Խիստ փափուկ պաշտոն մըն է ձեզինը, դաստիարակելու կոչված եք սերունդ մը, որ ապագա ազգն է»,—գրում է Կոմիտասը: Ապագա ազգը մեր մշտանորոգ ժողովուրդն է, մեր անցյալ, ներկա և գալիք սերունդներն են, որոնց կոչ է անում մեր տոհմիկ երգի մեծ քուրմը՝ իր հավերժական պատգամով. «Ահա մեր իսկական երգերը, նրանց ստեղծել է այն ժողովուրդը, որին դուք պատկանում եք, և դուք պիտի նոցա սիրեք»: Այս պատգամի ճշմարտացիությունը հավաստում է նաև օտարը՝ նշանավոր երաժշտագետ Թովմաս Հարթմանը. «Հայ երաժշտության նախանձախնդիր ամեն ոք նախ պետք է լիովին ուսումնասիրի և հասկանա Կոմիտասին ու ապա միայն սկսի ստեղծագործել: Ով ուզում է հայ երաժշտությանը զարկ տալ, ավելի առաջ մղել, նա այլ ճանապարհ չունի»: Այո, Կոմիտասն է հայ երաժշտության ճշմարիտ ու միակ ճանապարհը և այդ ճանապարհը լուսավորող մշտավառ փարոսը: Դժվար է կոմիտասյան գոհար երգերից մեկնումեկին գերապատվություն տալ, դըրանք բոլորն էլ անխտիր իրենց վրա կըրում են կոմիտասյան հանճարի կնիքը և ամեն մեկը մարդկային հոգու մի չըքնաղ մանրանկար է, որը հանճարեղ երգահանի արարչագործ վրձնի ու շնչի տակ դարձել է մի բարձրարվեստ կոթող և առանձին կարող է փառքի լուսապսակով զարդարել հեղինակի լուսավոր ճակատը:

Ուստի, սիրելի պատանիներ, ինչպիսի հովերի առջև էլ բաց լինեն ձեր պատուհանները, մի մոռացեք «Անտունի»-ն, «Ծիրանի ծառ»-ը, «Կռունկ»-ը, «Կուժն առա»-ն, «Չինար ես»-ը, «Քելեր-ցոլեր»-ը, «Գարուն ա»-ն, «Մոկաց Միրզա»-ն, «Հայաստան»-ը:

Մի մոռացեք «Խորհուրդ Խորին»-ը, «Ով զարմանալի»-ն, «Հիշեսցուք»-ը, «Ուրախ լեր»-ը և կոմիտասյան հոգեպարար մյուս երգերն ու մեղեդիները:

Եվ քանի որ հանճարներն անմահ են և ապրում են իրենց իսկ ստեղծած ու թողած արժեքներով, ուստի՝ Կոմիտասը ևս ապրում է ու պիտի ապրի իր մեծագործությամբ, իր հրաշալի ու աննմանելի վաստակով ամեն հայի մեջ՝ քանի դեռ ապրում է հայը մեր մոլորակի վրա:

«Նա մահկանացու ծնվելով, անմահ հիշատակ թողեց»:

**ԽՈՐԵՆ ՊԱԼՅԱՆ**



**ՀՐԱՆՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

## Արցախ

**Թռչուններ կային, որ երկինքներից**
**հաշտ ու կենարար հուշ էին բերում,—**
**ճերմակ էր տենչը,**
**խոսքը՝ թափանցիկ:**
**Թռչուններ կային՝ վառ թռիչքներից**
**չէին հագենում. ապրել են, ինչպես**
**շողի մեջ փակված**
**երկար հիացմունք:—**
**«Նրանք գժտվել են ինքնամփոփ**
**Երկրի կասկածների հետ,**
**հիշո՞ւմ ես, թե ուր**
**քաղցած չվեցին»:**
**Թռչուններ կային, որ խոստացել են**
**աստղ ու վերադարձ...**

## Ջվարթ օր

**Ծնծղուկները**
**սիրո փշրանքներ են կտցում**
**մանուկների ձայնից**
**և հորինում իսկույն**
**թռիչքի նոր ձևեր:—**

**Ձեր ծիծաղի միջով**
**այսօր, վաղը, մի օր**
**կանցնեն մանուկներ,**
**բոլոր թռչունները,**
**մկրտելով անկեղծ**
**զվարթության տենչով:—**

**Զվարթ եղանակը**
**մայրն է թռիչքների...**



## Մեծարենցի

## մենախոսությունը

Եվ անսահմանորեն զգալ,
թե ինչպես է բյուրեղանում ցավը
մարմնի, հիշողության նուրբ ծալքերում,
երբ խավարն ավելի դիմացկուն է,
քան լույսը,
և լճացած է դժբախտությունն անձև:
Տեսնել աստվածների անզորությունը
թարմ ու կատարյալ հոգու առաջ,
զուսպ հիանալ քաղցր անուրջներ ծնող
վտիտ վայրկյաններով:
Եվ խոսել հովի հետ, սիրո,
մեղուների ու նավակների հետ,
այնքան պատեհ խոսել,
որ մարդ սարսռա իր լսածից
և մոռանա իսկույն
մեղքի ճանապարհը:

Չհագենալ երբեք ցնծության բեկորներով,
կաթիլներով հույսի,
ամեն զգացման մեջ
մաքուր հավերժության երանգները որսալ:
Ու չխաբվել թախծի,
վհատության, մահվան,
կապը կտրած վշտի սոսափյունով,
որ հրում է կյանքը գիրկն անհայտության:
Չմոռանալ անցյալ հիշատակները ջինջ,
երդվել նրանց խղճով,
չհեռանալ մի քայլ ծառ ու ծաղկից,
թե ապրեցիր անգամ թիթեռի պես կարճ:
Օ, քմահաճ բախտը սովկալի վերք է
ժամանակի սիրով արբածների համար,
նրանց անդորր է պետք,
որ հորինեն սրտանց անանձնական հրճվանք:
Մինչդեռ պատահում է,
տառապում են նրանք հայրենաբույր հողում
նաև մահից հետո...

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Գայանեն և Արմենուհին Էջմիածին քաղաքի № 3 միջնակարգ դպրոցի գրական խմբակի անդամներ են: Տպագրելով նրանց փոքրիկ բանաստեղծությունները, խմբագրությունը հույս ունի, որ նրանք և խմբակի մյուս անդամները՝ Գոհարը, Աննան, Կարինեն, Հասմիկը, Հենրիկը և մյուսները, հաջորդ անգամ ավելի հասուն ստեղծագործություններ կներկայացնեն խմբագրություն: Հաջողություն ենք մաղթում նրանց:

## Աշուն

Աշունը իջավ մեր հին դաշտերին՝
Գույնզգույն ներկեց դաշտերը մեր հին,
Ծաղկունքն աչքերը նորից փակեցին,
Նորից թռչուններ թռան, չվեցին:
Աշուն է, աշուն, դեղնահեր, նախշուն.—
Տերևաթափ է բոլորի սրտում:

## Առվակ

Ասա ինձ, առվակ,
Ինչո՞ւ ես լռում,
Ինչո՞ւ դու ինձ հետ
Զրույց չես անում:
Ինչո՞ւ չես հիշում
Օրերը մեր լավ,
Երբ խաղում էինք
Զվարթ ու մենակ
Այն լավ բացատում,
Զով մարգագետնում:

Ինչո՞ւ ես լռում,
Իմ խելոք առվակ,
Ինչո՞ւ չես խոսում,
Իմ զուլալ առվակ,
Մի՞թե մոռացել ու խենթացել ես...

ԱՐՄԵՆՈՒՀԻ ՀԱԿՈԲՅԱՆ

## Արցախ

Դու իմ անգին երազ,
Իմ քաղցրանուն Արցախ,
Դու ծեծված ու տանջված,
Միշտ վշտերով ապրած:

Դու իմ սրտի կրակ,
Ավերված ու լքված,
Դու նորանոր ծնված,
Եվ մեր հոգու ատված:

ԳԱՅԱՆԵ ՍՈՖՅԱՆ



ԼՈՒՍԻՆԵ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, № 131 միջն. դպրոց



ԱՐԹՈՒՐ ԹՈՐՈՍՅԱՆ
Երևան, № 131 միջն. դպրոց



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

### Արցախը քեզ հետ է, Հայաստան

Տանջվել ենք, գրկվել մենք դարեր ի վեր,
Այս մեծ աղետն էլ մեզ բաժին հասավ:
Երկնքում մութն ու լույսն են խառնվել,
Ի՞նչ մեղք ենք գործել, մայր հող, մեզ ասա...

Աշխարհն ինչի՞ց է կերտված, ասեք,
Որ Տառապողին տրվեն նոր վշտեր:
Մի՞թե հրաշքի ժամը չի հասել,
Համբերել այսքա՞ն, կարծում եք հե՞շտ է...

Ո՞վ է շնորհել դիրք ստահակին,
Քծնողին՝ պաշտոն և աթոռ փափուկ:
Ի՞նչ դուռ բաց անի մեր հոգնած հոգին,
Երբ երկինքն ինքն էլ կարկուտ է թափում:

Ոչ, պետք է տոկալ, տեսած դավ ու վիշտ,
Մեր գլխի վրա թող կրակ մաղեն,
Գիտցիր, Հայաստան, մենք քեզ հետ ենք միշտ,
Եվ չի սասանի մեզ ոչ մի աղետ:

### Հույսը

Մենք մեր հույսին կառչենք ամուր,
Հույսով նայենք ապագային,
Թող մեր հույսը դառնա կամուրջ,
Որ Տուն դառնա Արցախը հին:

Մենք մեր հույսին կառչենք հաստատ,
Եվ մեր հույսի լույս կամրջով
Դեպի քեզ գանք, Մայր Հայաստան՝
Կարոտներով ու անուրջով:

Մենք մեր հույսին կառչենք կրկին,
Մեր հավատի գետն է հորդում:
Թող Մայր հողն իր որդուն գրկի՝
Իր կարոտած Արցախ որդուն:

### Մորս սիրտը

Կա աշխարհում մի սիրտ պստիկ,
Ցորեն հատիկի չափ, ինչո՞ւ...
Մորս սիրտն է, հաճախ սաստիկ
Ցավում է ու չի տրտնջում:

Մի սրտիկ կա բոլորանվեր,
Դա սուրբ սիրտն է իմ մայրիկի,
Տեսած արյուն, ջարդ ու ավեր՝
Հավատում է կրկի՞ն, կրկի՞ն:

Կա աշխարհում սիրտ մի տոկուն,
Մորս սիրտն է համբերատար,
Սիրտ, որ խղճիս դուռն է թակում՝
Լինել շիտակ, լինել արդար...

Պստիկ սրտում՝ այսքան հավատ,
Այսքան ներում և այսքան գո՞ւթ...
Այո, մորս սիրտը ցաված
Տառապում է անօգ, անքուն:

**ԱՐԵՎԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆ**

# «ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ...»

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Ալեքսանդր Գոլոշյան
**(1867—1889)**

19-րդ դարի վերջին քառորդի հայ ազգային ազատագրական շարժման առաջին ծիծեռնակներից է Ա. Գոլոշյանը, որը արևմտահայությանը թուրքական դաժան լծից ազատելու նպատակով իր պատանեկան և երիտասարդական տարիներից սկսած աշխատանք էր տանում Սալմաստում և Վասպուրականում: 1889 թ. նա իր ընկերների՝ Կ. Գուլակըրզյանի (Ականջատյան), Հ. Ագրիպասյանի հետ զինված շարժվեց դեպի Վան: Փոքրիկ այս խումբը նպատակ ուներ անցնել Վասպուրական՝ տեղի երիտասարդներից հայդուկային խումբ կազմել և պայքարել ժողովրդին հարստահարողների դեմ: Խումբը իր հետ վերցրել էր գրականություն և թերթեր: Ճանապարհին, Չուխ Կետիկ (Գյադուկ) վայրում, նրանք պաշարվում են թուրքական ոստիկանների և զինված քրդերի կողմից: Սկսվում է օրհասական կռիվը, որի ընթացքում սպանվում են Հ. Ագրիպասյանը և Ա. Գոլոշյանը:

Ովքե՞ր էին այդ երիտասարդները:

Ալեքսանդր (Վարդան, Սանդրո), Գրիգորի Գոլոշյանը ծնվել է 1867 թ. Թիֆլիսում, մասնավոր փաստաբանի ընտանիքում: Հայրը, ինչպես Ա. Գոլոշյանն է նշում մեզ հասած նամակներում, իր ժողովրդին նվիրված, լուսավոր ու ազնիվ բնավորության տեր մարդ էր և ուներ երեք աղջիկ և երկու տղա: Հայրը վկայում է, որ փոքր հասակից Ալեքսանդրը երազում էր գնալ Արևմտյան Հայաստան, տեսնել նրա սարերն ու ձորերը, գյուղերն ու կարկաչուն աղբյուրները, գետերն ու լճերը, հինավուրց վանքերն ու բերդերը: Սկզբնական կրթությունը Ա. Գոլոշյանը ստացավ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, ապա՝ գիմնազիայում: 1882—83 թթ. նա սովորում էր Լազարյան ճեմարանում, երբ գրեց իր անդրանիկ ոտանավորները և «Լեոն վերջին» ողբերգությունը, որը բեմադրվեց տեղի աշակերտների ուժերով: Արխիվային վավերագրերից երևում է, որ նա շատ լավ է սովորել, բայց վերակացուի հետ վիճելու ու երբեմն բացակայելու պատճառով 1883 թ. ազատվում է ճեմարանից: Մի անգամ նա տեսուչ Քանանյանին ասել էր, որ ինքը անպայման պետք է գնա Հայաստան, որպեսզի նրա «թշվառ զավակներին ազատություն տա»: Անկասկած Ա. Գոլոշյանը Մոսկվայում եղած ժամանակ մասնակցել էր ուսանողների ուժերով ընտեղծված «Հայրենասերների միություն» գաղտնի կազմակերպության աշխատանքներին, որը հրատարակում էր հայ լրականության մեջ առաջին քաղաքական օրգանը՝ «Ազատության ավետաբեր»-ը:

1883 թ. Ալեքսանդրը Թիֆլիսում էր: Շատ չանցած 16-ամյա պատանին թողնում է ընտանիքը և մի երկտող այն մասին, թե «Այն ընկերությունը, որին երդվեցի հլու ծառա և սորուկ լինել, հրամայում է գնալ Պոլիս, և ես հնազանդվում եմ: Ես գնում եմ առանձին անձնագրով և կերպարանափոխ, ուրեմն իզուր կհետևեք»: Հոր ջանքերը որդուն գտնելու ուղղությամբ իզուր են անցնում:

Ալեքսանդրը սկզբից գնում է Ջուղա, ապա 5—6 ամիս հետո հաստատվում է Սալմաստի Հավթվան գյուղում, ուր զբաղվում է ուսուցչությամբ: Շուտով 17-ամյա պատանին հայտնվում է Վանում, որտեղից էլ նամակ է գրում հորը: Վանի բնակիչներին տարօրինակ թվացող այդ

երիտասարդը գնում է Վարագա, ապա ս. Գրիգորի վանքերը: Աշխատում էր առավոտից մինչև երեկո. արտ էր վարում, խոտ էր հնձում և կալ կալսում: Վանքերում գտնված ժամանակ նրան սկսում են այցելել Վանի երիտասարդները, որոնց թիվը օրեցօր ավելանում է:

Վասպուրականի հետ ծանոթանալուց հետո նա վերադառնում է Հավթվան: Այստեղ նա հանդիպում է Մ. Փորթուգալյանին, որը նրան խոստանում է համախմբել տասը երիտասարդի, եթե գա Վան և հայդուկային խումբ կազմի:

Շատ չանցած Ա. Գոլոշյանն արդեն Վանում էր, որտեղից գնում է Շատախ և ապա Մուշ: Ջենքի պակասը հնարավորություն չի տալիս ստեղծել խումբը, և նա վերադառնում է Հավթվան: Այդտեղից հորն ուղղված նամակում նա գրում է. «Ես չէի կարծում, հայր, որ դու այդպիսի ցածր գաղափար ունիս ինձ վրա, մի՞թե դու ինձ գարշելի սրիկա և ավազակ ես կարծում, որն անգործ, անաշխատ ուրիշի հացով է ապրում: Եվ կամ եթե ես ելել եմ ազատության համար աշխատելու, մի՞թե կարծում ես, որ ավազակությամբ պիտի սկսեմ գործս...»:

Արխիվում պահպանված Ա. Գոլոշյանի և նրա հոր ու ընտանիքի անդամների գրած նամակների ստվար հատորում կան նամակներ նաև Վասպուրականի նրա բարեկամներից, որոնք նրան անվանում են ազնվասիրտ բարեկամ, թշվառների համար կարեկից, մեծասիրտ մարդ, «հայ տառապյալների սրտակից բարեկամը», որը տոչորվում է «ազատության հրով»:

Հավթվանում գրագետ, հայրենասեր երիտասարդը չէր թափառում, չէր խմում և չէր մասնակցում ավելորդ խոսակցությունների: Նա սկսեց սովորել թուրքերեն և նույնիսկ դասեր էր տալիս, ապա սկըսեց ուսումնասիրել պարսկերենը այնքան, որ արդեն կարդում էր Հաֆիզին, սկսեց ֆրանսերենի ուսումնասիրությունը և հորը գրում էր, որ նպատակադրվել է իրեն տալ «արևելյան լեզուների ուսման», սկսել էր գրել «Աշխարհիկ լեզվի քերականություն»:

Ա. Գոլոշյանը Հավթվանում հայտնի էր Վարդան Հարությունյան անուն ազգանունով: 1887 թ. հունվարին նրա ջանքերով գյուղում ստեղծվեց «Գրասիրական ընկերություն» իր գրադարանով և ընթերցարանով, որտեղ կային գրքերի հավաքածու և ստացվում էր «Արմենիա» թերթը, որը ըստ հորը գրած նամակի, ունի իր ազատ և անկախ դեմքը և նպաստելու է Հայաստանի վերածնությանը: «Ամեն անհատ հայ պարտավոր է աշխատել ազգի համար, թանկագին հայրիկ: Իմ միակ փափագս և իմ պարտքս կատարել առ ազգ և հայրենիք: Հայ լինենք և հայ: Օտարին խունկ ծխել, օտարի ծառայության մեջ մնալ, օտարի շունչ քաշել՝ մի ցանկություն է, որին արժան է միայն նախատինք և խայտառակություն»:

1887 թ. հուլիսին նա վերադառնում է Թիֆլիս, որտեղ իր շուրջը հավաքված ծանոթ և անծանոթ երիտասարդներին պատմում էր Պարսկաստանի, Սալմաստի, Վասպուրականի և Տարոնի մասին: Նրանց տունը դառնում է ժամանակի ազգային-ազատագրական հովերով տարված երիտասարդների հավաքատեղի, որոնց մեջ էր նաև 18-ամյա Հովհաննես Թումանյանը: Նրա կնոջ՝ Օլգայի վկայությամբ, բանաստեղծը ա:րվելով արևմտահայերի ազատագրության գաղափարներով, ցանկացել է ընկերանալ Գոլոշյանին և գնալ Արևմտյան Հայաստան, բայց հիվանդությունը թույլ չի տվել: Սականյն բանաստեղծը Գոլոշյանին է նվիրել «Հին կռիվը», «Տանը», «Երկրում» բանաստեղծությունները:

Գոլոշյանը Թիֆլիսի Սաղ կոչված թաղում հանդիպում է քաղաքի և Ներսիսյան դպրոցի երիտասարդների հետ: Նա խոսում էր մաքուր գրական լեզվով և «խոսելիս երբեմն նրա աչքերը այնպես էին փայլում, կարծես աչքերից շանթ էր արձակում», երբ նկարագրում էր արևմտահայերի կրած նեղությունները ու գյուղերի թալանն ու առևանգումը:

Այստեղ նա ծանոթանում է Րաֆֆու հետ. «Ախ, չեք ասում, տղերք, ինչու ուրախ եմ այսօր, վերջապես հաջողվեց Րաֆֆու հետ ծանոթանալ, փողոցում»: Այս դեպքից հետո Գոլոշյանը սկսում է այցելել նրա տուն, ապա մասնակցեց նըրա թաղմանն ու վերադարձավ վիպասանի ծննդավայրը: Սալմաստից հորը գըրած նամակում Րաֆֆու մասին նա ասում է, որ պատանեկան հասակից «այդ հեղինակի ընթերցումները ներշնչեց մեջս մի վառ ու ազնիվ սեր դեպի ազգ ու հայրենիք, դեպի տառապող հայությունը»:

Սալմաստում նա ծանոթանում է ուսու-

ցիչ, Վաճի ծնունդ Հ. Ագրիպպասյանի (1866—1889) հետ, որի անմեղ հորը ըսպանել էին քրդերը: Այս երիտասարդը ավարտել էր Մ. Փորթուգալյանի վարժապետանոցը և եղել էր Բաղեշում, Ալաշկերտում, Բուլանըխում, Մուշում, Սասունում և այլ վայրերում: Հնակարկատ էր, սովորեց զինագործություն և իր համար պատրաստեց ամերիկյան «մարտին» տիպի հրացան: Այստեղ նա ծանոթանում է նաև Կ. Գուլակսըզյանի հետ, և երեքով որոշում են անցնել Վան:

Սալմաստ վերադառնալուց հետո Գոլոշյանը Վ. Հ. ստորագրությամբ (Վարդան Հարությունյան) «Արմենիայում» սկսեց տպագրել «Նամակներ Հայաստանից» հոդվածաշարը (1889 թ. փետրվարի 13-ից), որի մեջ չի ընդունում Եվրոպական օգնությունը և գտնում է, որ ազգին պետք է ազատ պահել «օտարի միջամտությունից»: Ինչ վերաբերում է Թուրքիային, ապա նա ճնշելու է բոլոր ազգերին, որոնք «ազատ ապրելու ցանկություն» են հայտնելու: Հայերի ազատագրական ճիգերը ճնշելու նպատակով Թուրքիան սկսեց հայերով խիտ բնակեցված վայրերը բնակեցնել լազերով և չերքեզներով, ծանրացնել հարկերը և անպատիժ թողնել քրդերի «բռնաբարություններն ու վայրենությունները», նրանց թույլատրեց զենք կրել, իսկ հայերին պատժել դրա համար: Թուրքիան, գրում էր Գոլոշյանը, ճնշում է հայերին, վախենալով այն բանից, որ եթե հանկարծ նրանք սկսեն պայքարը, նա կկորցնի իր տերության «ամենագեղեցիկ և շահավետ գավառները», և այդ է պատճառը, որ Թուրքիայի «ամենածանր հոգսերից մեկը հայկական խնդիրն է», և քանի որ օսմանյան պետությունը ցանկանում է ապականել մեր ազգի կյանքը, «մեր ինքնուրույն գոյության վիհը փորել, մենք էլ պետք է աշխատենք խանգարել նրա այդ ձգտումները»: Հոդվածաշարի վերջին մասը լույս տեսավ 1889 թ. հուլիսի 20-ին, երբ Ս. Գոլոշյանը չկար:

Ջուխ Կետիկում զոհված երկու անձնազոհ հայ երիտասարդների մասին գրվեցին շատ բանաստեղծություններ, հոդվածներ և գրքեր: Յուրաքանչյուր տարի նշվեց նրանց մահվան տարեդարձը: Հավթվանի դպրոցը կոչվեց Գոլոշյանի անունով: Գոլոշյանը հայ ազգային-ազատագրական շարժման առաջին ռահվիրաներից մեկն է:

Սիսիանի շրջանի Ուղտասար լեռան թիկունքում, ծովի մակերևույթից շուրջ երեք հազար մետր բարձրության վրա սառնորակ մի լիճ կա, որի ափին ցրիվ են եկած հրաբխային ժայռաբեկորներ, իսկ լեռան հյուսիսային կողին անձավաբնակ մարդու կացարաններն են: Ահա այդ ժայռաբեկորներից մի քանի հարյուրի վրա հազարների հասնող ժայռագրեր, ժայռապատկերներ են հայտնաբերված, որոնք թեև ունեն մինչև վեց հազար տարվա հնություն, բայց մինչև օրս պահպանվել են անաղարտ կերպով:

Այդ պատկերները մարդը կերտել է քարե, մասնավորապես կայծքարե գործիքներով: Ժայռաբեկորների վրա պատկերվածը մեծ մասամբ վայրի կենդանիներ են, նաև որսի տեսարաններ: Մի տեղ, օրինակ, գծագրված են խոշոր եղջյուրներով եղջերուներ, որոնք խունապահար ծառս են լինում և ելք փնտրում իրենց վրա հարձակվող որսորդական շներից ազատվելու համար: Զարմանալի դինամիկ կերպով է տրված շների հարձակողական վիճակը: Թեև որսորդը այստեղ շների հետ չի պատկերված, բայց հասկացվում է, որ մարդն է շներին բաց թողել որսի վրա և որ նրանք զբաղեցնում են կենդանիներին, մինչև որ տեղ հասնի իրենց տերը՝ եռաժանին ձեռքին (եռաժանի ենք ասում, որովհետև քարերից մեկի վրա եռաժանի է պատկերված): Նշանակում է՝ Սյունյաց աշխարհի նախաբնիկները սրանից շուրջ վաթսուն դար առաջ շներով որս էին կատարում:

Այդ ժամանակ նրանք գործ էին ածում նաև նիզակ, և դա երևում է պատկերից, ուր մարդը պատրաստվում է բարձրացրած նիզակով հարվածելու գայլին (այո, պոչը կախ, ականջները ցից-ցից. իսկական գայլի պատկեր): Նրանց ծանոթ էր նաև օղապարանը, որով թաքստոցից «արկան» էին նետում կենդանիների վրա, և դա երևում է ժայռին փորագրված օղապարանից:

Այստեղ պատկերված են այն կենդանիները, որոնք հեռավոր ժամանակներում ապրում էին Սյունիքում՝ խոշոր, թրաձև եղջյուրներով քարայծեր, արջեր, առյուծներ, «բիզոններ», վարազներ, անգամ գալարվող վիշապներ: Պատկերները



ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ
Հատված «Հայաստանի կենդանական աշխարհը» անտիպ հատորից

# Ինչ են պատմում նախնադարյան նկարները

աչքի են զարնում ռեալիստական վերարտադրությամբ, իսկ առանձին դեպքերում կենդանիների ու գազանների անատոմիական ճշգրտությամբ:

Ուղտասարից մի փոքր հեռու, այլ վայրերում գտնված ժայռանկարներում ևս կենդանիները հիմնականում վերարտադրված են պրոֆիլ. գծված են բավական դիպուկ, սակայն սեղմ, առանց մանրամասնությունների ու ավելորդաբանությունների՝ էականի, բնորոշի շեշտումով. «Նախնադարյան նկարչի վարպետության մեծությունը երևում է այն բանից, որ պատկերի մեջ մի փոքր մասնիկ փոխելով՝ կարողացել է բնորոշել կենդանու տեսակը (հովազ, առյուծ, շուն և այլն),— գրում են նույն գիտնականները: Եվ իրոք, նայելով այդ նկարներին, զարմանում ես, թե ինչպես նախամարդը մի քանի գծերով տվել է, օրինակ, ինչպես է շունն ընկրկում եղջերվի առաջ, բայց և շարունակում է իր հարձակողական հաչոցները: Պատկերացնո՞ւմ եք՝ շունը հարձակվելիս և միևնույն ժամանակ՝ նահանջի պատրաստ դիրքում: Ընդամենը վեց աննշան գիծ և քո առջև կանգնած է խոշոր քարայծը՝ գծերից չորսը ոտքերն են, երկուսը՝ եղջյուրները: Օձն այնպես է փորագրված, որ զգում ես նրա օղակ-օղակ շարժումը դեպի առաջ:

Ուղտասարի պատկերները դեռևս լրիվ չուսումնասիրած, գիտնականները Սյունիքի այլ վայրերում ևս գտան մեծ քանակությամբ ժայռապատկերներ և այդ մասին հաղորդում արին մամուլում: Սաֆյանը և Կարախանյանն իրենց այդ հաղորդման մեջ գրում են, որ այդ պատկերների մեջ չափազանց առատ են որսի տեսարանները: «Հաճախ որսորդը պատկերված է որսած քարայծի ոտքերից բռնած, գլխից վեր պահած դիրքով: Հեծյալ որսորդներ չկան, հետիոտն որսորդները զինված են աղեղներով, շատ հաճախ ձեռքերին բռնած ունեն վահան: Որսորդներին հաճախ ուղեկցում են որսկան շներ: Հետաքրքիր են շուրջկալով որսի տեսարանները: Ժայռապատկերներում զգալի քանակ են կազմում որսի և այլնի հետ կապված պաշտամունքային արարողություններ, ծիսական խմբպար ներկայացնող սյուժեները. թև-թևի տըված, կոփածո մարմիններով այրերի՝ լեռնաբեկորների նմանող խմբպարերի տեսարանները: Շատ հաճախ պարողների ոտքերի տակ պատկերված են բարձրեղջյուր քարայծ, եղջերու, հովազ և այլն: Տարածության խորությունը ցույց տալու առաջին փորձը ակնհայտ է մասնավորապես պարող մարդկանց, որսորդ-նետաձիգների պատկերների վերարտադրության մեջ, երբ պարողի շարժումն է ցույց տրված»:

Մեր երկրի այլ վայրերում՝ գլխավորապես Արագածի լանջերին և Գեղամա լեռներում մեծ քանակությամբ ժայռապատկերներ է գտել և ուսումնասիրել Ս. Հ. Սարդարյանը: Այդ պատկերները փորագրել են միջին քարե դարում և նոր քարե դարի սկզբներին ապրող մեր նախնիները, բայց թե ճշգրիտ կերպով որքա՞ն ժամանակ մեզնից առաջ՝ առայժմ հայտնի չէ: Այդ պատկերները, ինչպես նկատել է դրանց հայտնաբերող գիտնականը, ինքնատիպ են, և «զարմանալի արտահայտչությամբ տալիս են մարդկային մարմնի շարժումությունը որսի տեսարանում:

Մի կողմում՝ զինված մարդիկ շների հետ, մյուսում՝ կենդանիներ: Կերպարանք ները շարժման մեջ են, սլանում են առաջ, վազելու ժամանակ ոտքերը լայն բացած, նետերը լարած, ձգված աղեղներով»:

Սարդարյանի հայտնաբերած ժայռապատկերները ճնշող մեծամասնությամբ որսի տեսարաններ են և որսի կենդանիներ՝ քարայծ, եղջերու, վայրի ցուլ, զանազան գազաններ և թռչուններ:

Գեղամա լեռների ժայռապատկերներից երևում է, որ նույնիսկ մեր հեռավոր նախնիք խնայողությամբ են օգտագործել բնության հարստությունն՝ իրենց սննդի աղբյուրը, ահ ունենալով, որ այդ աղբյուրը կարող է նվազել: Ինչի՞ց է երևում դա: Հարյուրավոր ու հազարավոր ժայռապատկերներ որսորդության տեսարաններ են ներկայացնում: Եվ ահա, երբ ուշադիր նայում ես նախնի արվեստագետի փորած այդ պատկերներին, նկատում ես, որ երբեմն որսորդը սպանելու ոչ մի մտադրություն չունի: Պարանների, ցանցերի օգնությամբ նա ջանում է բռնել վայրի կենդանիներին, իսկ դրանց ձագերին առանձնացնել, խնայել: Այդ կարգի պատկերները պրոֆ. Հ. Մարտիրոսյանին բերել են այն եզրակացության, որ դրանցով նախամարդը այն միտքն է ուզեցել հայտնել, թե հարկավոր է պահպանել որսի կենդանիները ոչնչացումից՝ «սննդի մշտական ու հուսալի աղբյուր ստեղծելու ամենազոր միտումով»:

Ի՞նչն էր դրդում մեր երկրի նախաբնիկներին իրենց անկատար գործիքներով կատարելու այնպիսի դժվարին գործ, որպիսին ամուր բազալտի վրա փորագրելն է: Այդ հարցի պատասխանը ստանալու համար, հարկավոր կլինի երկրագնդի որևէ խուլ անկյունում գտնել այնպիսի մարդկային ցեղ, որը դեռևս ապրելիս լինի իր քարե դարը և նայել, թե ինչպես և ինչու են այդ ցեղի մարդիկ կենդանիներ պատկերում ժայռերի վրա: Այդպիսի ցեղ գտնված է:

Անգլիացի գիտնական Չարլզ Պ. Մաունտփորդը ուսումնասիրել է Ավստրալիայի անապատում ապրող այն աբորիգենների կյանքը, որոնք դուրս չեն եկել քարե դարի ժամանակաշրջանից. դրանց գործիքները քարից են: Գիտնականի ներկայությամբ դրանք նկարներ են գծել ժայռերի վրա և ցույց են տվել իրենց նախնիների թողած նկարները քարանձավներում՝ կենդանիներ, որսի տեսարաններ և այլն: Ոմանք կարծում են, որ նախնադարյան այդ մարդիկ նկարել են նկարելու համար, պահանջ են զգացել նկարելու իրենց տեսածը կամ պատկերացրածը: Մյուսները այն կարծիքի են, որ «նախնադարյան մարդն իր բնույթով գործնական է և լոկ զվարճության նպատակով ժամանակ չի կորցնի կենդանիների նկարներ ստեղծելու համար: Եթե նա կենդանիներ է նկարում, ապա ավելի շատ այն բանի համար, որ որսը հաջող լինի: Ավստրալիայի որոշ մասերում աբորիգենները անկասկած նկարների մի մասին վերագրում են մոգական իշխանություն բնության ուժերի վրա, մյուս մասին՝ կենդանիների վրա»:

Այդ գիտնականը քարանձավի պատին հայտնաբերել է նախամարդու թողած նկարների մի ամբողջ շարք, ուր պատմըվում էր անապատային հսկա թռչունի՝ էմուի որսի մասին: Նկարներում կային այսպիսի տեսարաններ. որսորդները հետապնդում են իրենց վիրավորած թռչունին, իսկ նա փախչում է՝ ավազների վրա թողնելով իր հետքերն ու վերքից ծորող արյան կաթիլները: Վերջապես թռչունին սպանում են և ուտում: Գիտնականը հարցնում է աբորիգեն Մոանային և նրա ցեղակիցներին, թե ինչ նպատակով են արել այդ նկարները նրանց նախնիները: Նրան պատասխանել են, թե նկարներ անելով, իրենք որևէ նպատակ չեն հետապնդում, այլ դրանք իրենց արած հաջող որսորդության պատկերումն են:

Կարծում եմ նույն պատասխանը մեզ պիտի տար Սյունյաց աշխարհի հին բընակիչը, եթե մի հրաշքով գլուխը բարձրացներ նախնադարյան իր դամբարանից...




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**

Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# Արշակ II և Դրաստամատ

Փավստոսը շարունակելով պատմությունը՝ գրում է. «Այս պարսից թագավորը հրամայեց հայոց Վասակ զորավարի մորթը հանել, խոտով լցնել և տանել նույն Անդմըշ բերդը, որ Անհուշ է կոչվում, որտեղ բանտարկեցին և Արշակ թագավորին»: Տարիներ անց, երբ պարսիկները պատերազմում էին քուշանների դեմ, պարսիկների կողմից շատ քաջագործություններ արեց հայոց նախարար Դրաստամատը, որ փրկում է Շապուհի կյանքը: Իր ծառայության դիմաց նա պարսից արքայից խնդրում է թույլ տալ, որ ինքն այցելի իր Արշակ թագավորին: Թույլատվությունն ստանալով՝ գընում է Անհուշ բերդ, այցելում սիրելի թագավորին, արձակում նրա շղթաները, լըվանում գլուխը, լողացնում, հագցնում ազնիվ զգեստներ և սեղան նստեցնում՝ հըրամցնելով թագավորական ըմպելիք: Նա թագավորին մխիթարում է, ուրախացնում հրավիրած նվագողներով: Երբ միրգ են մատուցում, Արշակին դանակ են տալիս, որ կտրի և ուտի: Արշակն ասում է. «Վայ ինձ՝ Արշակիս, հըստեղից ուր ընկա և ինչ օրի հասա»: Այս ասելով՝ թագավորը ձեռքի դանակը սիրտն է խրում և անմիջապես մեռնում: Ապա՝ Փավստոսը գրում է. «Դրաստամատը, երբ այս տեսավ, վրա ընկավ, դանակը քաշեց, հանեց նրա մարմնից և խրեց իր կողը: Նա նույնպես նույն ժամին մեռավ»:

Շապուհը Հայաստան է ուղարկում մեծ զորք՝ Զիկ և Կարեն զորավարների հրամանատարությամբ: Փառանձեմ թագուհին իր որդի Պապի հետ թագավորական 11 հազարանոց զորքով ամրանում է Արտագերս բերդում: Դա 368 թվականն էր: Պարսիկները բերդը պաշարում են: Հայերը հակահարվածներ են տալիս հակառակորդին: Իսկ Ներսես Մեծ կաթողիկոսը և հայոց նոր սպարապետը՝ Վասակի որդի Մուշեղ Մամիկոնյանը, մի շարք նախարարների հետ օգնություն են խնդրում Հռոմի նոր կայսրից՝ Վաղեսից, որպեսզի նա զորք ուղարկի Հայաստան և օգնի՝ Պապին հռչակելու հայոց թագավոր: Մինչ այդ Պապին փախցրել էին հույների մոտ: Թագուհին նորից է օգնություն խնդրում Վաղես կայսրից: Պապը հռոմեական մի փոքր զորաբանակով գալիս է Հայաստան, բայց, պարսից զորքերից խուսափելով, հայր մարդպետ Գղակի հովանավորությամբ թաքնվում է Տայքի անտառներում:

Փառանձեմ թագուհին Արտագերս բերդում 14 ամիս դիմադրում է պարսիկներին: Այդ բերդի պահեստներում անչափ պարեն ու զինամթերք կար, բայց ժանտախտ է ընկնում զորքի մեջ, և այդ սարսափելի հիվանդությունից զորքի հիմնական մասը մահանում է: Պարսկական զորքը արշավում է դեպի Վրաստան, գըրավում երկիրը, վրաց թագավոր կարգում Շապուհին հնազանդ մարդու: Վերադառնալով Հայք, պարսիկներն ի վերջո գրավում են Արտագերս բերդը, կողոպտում, գերի վերցնում հայոց թագուհուն: Նրան տանում են Պարսկաստան, Շապուհի հրամանով անպատվում և դաժանորեն սպանում:

Հայերի հույսը թագաժառանգ Պապն էր: Եթե Շապուհը կարողանար նրան ըսպանել, հայոց գահը թափուր կմնար, հայ պետականությունը կվերանար, քանի որ Պապը Արշակի և Փառանձեմի միակ որդին էր, հայոց միակ թագաժառանգը: Շապուհը շատ անգամ է փորձում Պապին բռնել, բայց չի հաջողվում: Իսկ Հայաստանում Շապուհի զորքերը և նրանց միացած Մեհրուժան Արծրունին և Վահան Մամիկոնյանն իրենց զորքերով ահավոր վայրագություններ են անում:

Վահան Մամիկոնյանը, որ ամուսնացած էր Շապուհի քրոջ՝ Որմիզդուխտի հետ, դարձել էր պարսից թագավորի սիրելին և դաժան հաշվեհարդար էր տես-

նում իր հայրենիքի նկատմամբ։ Մեհրուժանն իր հերթին հայ հոգևորականներին աքսորում էր Պարսկաստան, Հայաստանի գրադարաններից հանում էր բոլոր գրքերն ու այրում (դրանք հիմնականում հունարեն գրքեր էին, հայերեն գրքեր դեռևս չկային, քանի որ դեռ հայերեն տառերը չէին ստեղծվել, և Հայաստանում ուսումը և եկեղեցական արարողությունները հունարեն էին)։

Պարսիկները գրավեցին ու ավերեցին Արտաշատը, նրա հայ և հրեա բնակչությանը գերի վերցրած՝ քշում էին Պարսկաստան։ Փավստոսը պատմում է Արտաշատի քահանա Զվիթի մասին։ Պարսիկներն իբրև պատիվ նրան ազատ են արձակում, բայց Զվիթն ասում է, որ ինքը չի թողնի իր հոտը, կմնա արտաշատցի գերիների մեջ, ուր էլ որ նրանց տանեն։ Պարսկաստանում Զվիթին առաջարկում են ուրանալ քրիստոնեությունը և դառնալ զրադաշտական։ Զվիթը մերժում է, և նրան սպանում են։

Պարսիկները գրավում, այրում ու ավերում են նաև Վաղարշապատը, Նախճըվանը, Երվանդաշատը, Զարեհավանը, Վանը և Հայաստանի այլ քաղաքներ։ Ամեն տեղ կոտորած են սարքում, տղամարդկանց սպանում փղերի ոտքերի տակ, կանանց ու երեխաներին ցից հանում, ազնվական կանանց մերկացնում և անպատվում էին։ Շատ ու շատ հայերի քշեցին Պարսկաստանի խորքերը։ Մեհրուժանն ու Վահան Մամիկոնյանը քանդում էին եկեղեցիները, ժողովրդին ըստիպում զրադաշտականություն ընդունել, կառուցում էին ատրուշաններ (կրակարաններ,— կրակը զրադաշտականների պաշտամունքի առարկաներից մեկն էր)։

Շատ նախարարներ փախել էին իրենց տներից կամ զինվորական ծառայության մեջ էին։ Դրանց կանանց Մեհրուժանը և Վահան Մամիկոնյանը ստիպում էին ընդունել զրադաշտականություն, հրաժարվողներին կախում և այդպես սպանում էին։ Վահան Մամիկոնյանն իր քրոջը՝ Համազասպուհուն, որ Ռշտունյաց աշխարհում (Վանա լճիափին) ամուսնացած էր նախարար Գարեգինի հետ, ըստիպում է զրադաշտություն ընդունել։ Համազասպուհին հրաժարվում է։ Վահանը քրոջը մերկացնում է և ոտքերից կախում Վան քաղաքի ժայռի բարձր աշտարակից ու այդպես սպանում։

Ի վերջո, Վահան Մամիկոնյանի որդին՝ Սամվելը, սպանում է հորը և խորթ մորը՝ Շապուհի քրոջը՝ Որմիզդուխտին։

Օգտվելով Հռոմի թողտվությունից՝ Շապուհի զորքերը գրավում են նաև ամբողջ Միջագետքը, Կապադովկիան, Ասորիքը, Կիլիկիան, և ամեն տեղ կոտորած սարքում, ավերում բերդերն ու քաղաքները։

Մեծ Հայքը տրոհվել էր. նրանից անջատվել էին Աղձնիքը, Նորշիրականը, Փայտակարանը, Ծոփքը և այլ աշխարհներ։

Հայ նախարարները մեծ ուշացումով հասկացան իրենց սխալը՝ գործած Արշակ թագավորի նկատմամբ։ Նրանք, որ երկարատև պատերազմի պատճառով տրտնջում ու բողոքում էին Արշակ II-ի



Արշակ և Դրաստամատ

դեմ, տեսան, որ Արշակի հեռանալով, միևնույն է, պատերազմը շարունակվեց ավելի վայրագ ձևով և հայրենիքը ոտնակոխ եղավ, գետերով հայի արյուն հոսեց: Այսպես պատժվեցին հայերն իրենց թագավորին թշնամու ձեռքը հանձնելով: Հասկանալով այս՝ շատ նախարարներ և ժողովուրդը պայքար սկսեցին Շապուհի զորքերի դեմ: Նրանց օգնության հասավ Վաղես կայսրի ուղարկած հռոմեական զորքը Արինթեոս զորավարի գլխավորությամբ: Շուտով թագաժառանգ Պապը եկավ Այրարատ: Սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը հայկական զորքով և նրան միացած ժողովրդական աշխարհազորայիններով հալածում էին պարսկական զորքերին:

Ի վերջո, 369 թ. Պապը Ներսես կաթողիկոսի և Մուշեղ Մամիկոնյանի ու նախարարների ուղեկցությամբ մտավ Արտաշատ և հռչակվեց հայոց թագավոր:

(շարունակելի)

ՌԱՖԱՅԵԼ
ՆԱՀԱՊԵՏՅԱՆ

# Ժամանակի դեմքին ծեփված ապրանքափոխանակություն՝ զանազան մանրամասնություններով

Բոլորը վազում էին՝ ես էլ վազեցի: Ահագին մարդ կար՝ մի երեսուն-քառասուն հոգի ու բոլորն էլ համարյա իմ հասակակիցներն էին՝ միայն վազողների առաջին շարքում ծանոթ մի քանի տասներեք-տասնչորս տարեկաններ տեսա: Բայց ոչ ոք չէր ուզում ասել, թե ինչ է եղել: «Մի բան պատահել է, մտածեցի ես, հաստատ շատ հետաքրքիր մի բան է եղել կամ էլ ինչ-որ բան են բաժանում»: Այդ տարիներին քաղաքում մեքենաներ շատ քիչ կային, իսկ մեզ մոտ, որ քաղաքի ծայրամաս էր՝ համարյա չէին երևում: Այնպես որ ապահով կարող էինք վազել՝ փողոցը մերն էր:

— Լսի՛ր,— բղավեց կողքիցս վազող մեկը, որ ամեն կերպ ուզում էր ինձանից առաջ անցնել, բայց ես խանգարում էի,— ո՞ւր ենք վազում, հը՞:

— Ոչ մի տեղ,— շնչակտուր վրա տվի ես,— փորձելով արմունկով նրան քիչ ետ հրել,— ավելի լավ է՝ տուն գնաս, հենց այնպես, մեզ համար վազում ենք:

— Ես էլ հավատացի՜,— հեգնելով ծիծաղեց այդ մեկը,— ո՜նց չէ…

— Մի՛ հավատա,— ասացի,— բայց լավ կլիներ՝ տուն գնայիր: Երևի դասերդ էլ չես սովորել: Ամոթ է:

— Ամաչելու բան գտավ,— կողը բռնելով բղավեց այդ մեկը,— սրան տես, չլինի՞ գերազանցիկ ես: Հը՞:

— Գերազանցիկը դու ես,— անկեղծորեն զայրացա ես,— չափդ ճանաչիր, երկու տարի է՝ վեցերորդում եմ սովորում:

Իհարկե ստում էի, բայց այդ տարիներին մենք ուրիշ ձևով էինք մեծանում: Շրջապատում այնքան ՍՈՒՏ կար, այնքան ԿԵՂԾԻՔ, որ հնարավոր չէր հասկանալ, թե ինչն ինչոց է: Ասում էին, որ ուսումը լույս է, տգիտությունը՝ խավար, բայց հանկարծ լսում էինք, որ բոլորի կողմից հարգված, լուսավորյալ ու կրթյալ մեկը, որ, ասենք, Բեռլինի համալսարանը փայլուն ավարտելուց հետո Հայրենիք էր վերադարձել ու մանկավարժությամբ էր զբաղվում՝ «Ծպտյալ թշնամի» է: Եվ հակառակի պես հենց կրթվածներն էին թըշնամի դուրս գալիս: Անհասկանալի բաներ էին կատարվում: «Ողջ երկիրը հերոսության ու խիզախության բացառիկ օրինակներ ցուցաբերելով՝ հաղթականորեն ավարտեց Հայրենական մեծ պատերազմը, դրանով իսկ ապացուցելով իր նվիրվածությունը Հայրենիքին, «ԱՌԱՋՆՈՐԴԻՆ», սակայն անարգ թշնամուն ծնկի բերելուց հետո հանկարծ պարզվեց, որ թշնամիների վերջը չի տրված, որ դրանցից էլի կան և այն էլ ոչ թե կարմիր սահմանից այն կողմ, այլ երկրի ներսում: Մի բան հասկանալը դժվարացել էր, իսկ երբ փողոց ավլող Գևոն մերկացրեց մեր շենքում ապրող «ծպտյալ թշնամի» պրոֆեսոր Ադամյանին, ես ընդհանրապես վերջ տվեցի հարցեր տալու իմ հիմար սովորությանը:

— Է՜յ, ժողովուրդ, էշի ականջում քնա՞ծ եք, ի՞նչ կլներ ձեր հալը, որ ես չլնեի,— մի առավոտ, կատարը տաքացնելուց հետո, գոռգոռոցը գցեց փողոց ավ-

լող Գևոն,— «ծպտյալ թշնամի» այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանը ասում է, որ տարբերությունը ընդամենը բեղերի երկարության մեջ է:

Հետո արդեն, երբ պրոֆեսոր Աղամյանին տարել էին, Գևոն պատմեց, որ մի իրիկուն, երբ այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանը տուն վերադառնալիս է եղել (քեֆն էլ լավ էր՝ հաճույքով շեշտում էր Գևոն) ու ինքը ԱՌԱՋՆՈՐԴԻ ծննդյան օրվա առթիվ շնորհավորել է նրա տոնը, այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանը բացատրում է (բացատրողին տեսնե՜ք, ծիծաղից շնչահեղձ էր լինում Գևոն, գիտունի մե՜կը, ինտելիգե՜նտ), որ մայիսի ինը ոչ թե առաջնորդի (փոքրատառով ասեց՝ պնդում էր Գևոն, ճիշտ է, բանավոր էր խոսում, բայց ԱՌԱՋՆՈՐԴ բառը փոքրատառով ասեց)... մի խոսքով, այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանը Գևոյին հակախորհրդային ագիտացիա էր արել ու ասել, որ մայիսի ինը հաղթանակի օրն է, ու առաջնորդի ծննդյան տարեդարձի հետ ոչ մի կապ չունի:

— Բա որ ԱՌԱՋՆՈՐԴԸ էն ֆյուրերի վիզը ոլորե՞ց,— զայրացած բղավել է Գևոն, որին այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանը պատասխանել է.

— Երկուսն էլ ֆյուրեր են, տարբերություն չկա,— ու ուզեցել է գնալ, բայց հետո մի բան հիշելով կանգնել ու բացատրել է,— այսինքն՝ տարբերությունը բեղերի երկարության մեջ է:

Իսկ հետագայում, երբ այսպես կոչված պրոֆեսոր Աղամյանի բնակարանը փողոց ավլող Գևոյի ընտանիքին հատկացրին, ու նրա կինը բակում անգործ թափառող կանանց գոռոզամտորեն ասում էր՝ մեր երկրում պրոֆեսորն ու «դըվորնիկը» մեկ են, կամ՝ ի՞նչ տարբերություն պրոֆեսորի ու «դվորնիկի» մեջ,— ես հասկացա, որ ճիշտն ու սխալը, լավն ու վատը իրար այնքան են մոտ, որ համարյա նույն բաներն են:

— Չեմ հավատում,— բղավեց կողքիցըս վազող այդ մեկը,— դու մեր շենքի տղերքից ես, ես քեզ գիտեմ:

— Հաստագլուխ,— քրքջացի ես շնչակտուր,— ձեր շենքի հետ ի՞նչ գործ ունեմ, ես մեր շենքում եմ ապրում:

— Հա,— ասաց կողքիցս վազող այդ մեկը,— բայց հայրդ հո՞ մեր շենքում է ապրում:

Լեզուս կծեցի: Երևում է այդ շան տղեն ինչ-որ բան գիտեր: Վատն այն էր, որ, իսկապես, մայրս ու ես մի տեղ էինք ապրում, հայրս՝ ուրիշ: Մեծերին հասկանալը դժվարացել էր: Որոշ ժամանակ սուսուփուս վազում էի:

— Է՜յ,— ասաց կողքիցս վազող այդ մեկը,— դե լավ, հավատում եմ, երկու տարի վեցերորդում ես, բայց արի էլ չըվազենք, կողքս ծակում է:

— Գժվե՞լ ես,— զայրացա ես,— ուրեմըն էսքան իզուր վազեցի՞նք... դիմացիր, քիչ է մնացել:

— Ի՞նչ գիտես, որ քիչ է մնացել,— համարյա հեծկլտաց այդ մեկը,— ախր չգիտես էլ, թե ուր ենք վազում:

— Հա, բայց հո՞ մենակ մենք չե՞նք վազում, կարծում ես մնացածները չե՞ն հոգնել, որ հեռու լիներ՝ ո՞վ կգնար...

— Գոնե իմանայինք, թե ուր ենք վազում, ինչի՞ համար,— բողոքեց այդ մեկը՝ սկսելով ետ մնալ:

Չգիտեմ ինչու՝ այդ մեկը ինձ կարգին մարդ թվաց, ու խղճացի նրան: Ետ ընկա ու թիկունքից սկսեցի հրել:

— Լսի՜ր,— բղավեցի,— արի ծանոթանանք, անունդ ի՞նչ է:

— Բակուր,— ասաց նա,— իսկ քոնը...

— Արմեն,— ասացի,— անունս Արմեն է, ազգանունս՝ Սեյրանյան:

— Արմեն,— խնդրեց Բակուրը,— արի մի քիչ հանգստանանք, հետո նորից վազենք:

— Որ հանգստանանք, հետո ո՞նց ենք հասնելու,— զայրացա ես,— ախր չգիտենք, թե ուր են գնում:

— Չէ,— հևաց Բակուրը,— ես էլ չեմ կարող, կողքս շատ է ծակում,— ու սկըսեց վազողների միջից դուրս գալ:

— Մի քիչ էլ դիմացիր, ամոթ է,— բըղավեցի ես, բայց Բակուրը արդեն շարքից դուրս էր եկել ու կաղալով մայթին էր մոտենում:

«Հիմարի մեկն է,— մտածեցի ես,— ավելի լավ, նրա բաժինն էլ ինձ կհասնի, շատ ուրախ եմ»: Բայց կարծես թե այնքան էլ ուրախ չէի: Այսինքն՝ բոլորովին էլ ուրախ չէի: Ետ նայեցի ու տեսա, որ Բակուրը նստել է մայթեզրին ու քիչ կըռացել: Զգացի, որ նրա բաժինը չեմ ուզում ստանալ՝ ինչ էլ որ ինձ հասնելու լիներ: Եվ նույնիսկ իմն էլ ինձ պետք չէր: Շարունակելով վազել, հաստատ համոզվեցի, որ, իսկապես, ոչ մի բան էլ չեմ ուզում: Թքած: Թե չէ՝ ի՞նչ է դուրս գալիս՝ մեկի հետ ահագին երկար ժամանակ





վազում ես, վազում, դեսից-դենից խոսում ես հետը, ստեր ես հորինում ու պատմում, ծանոթանում և ասում անունազգանունդ, իսկ երբ նրա կողքը ծակում է, ու նա շարքից դուրս է գալիս, ուրախանում ես, որովհետև մի ինչ-որ բանից քեզ ավելի շատ է բաժին մնալու: «Վախենամ Վարդան Մամիկոնյանին արածս դուր չգա,— մտածեցի ես»: Այդ տարի «Վարդանանքը» նոր էի կարդացել ու ինչ էլ անելու լինեի, միշտ մտածում էի, թե տեսնես Վարդան Մամիկոնյանը արարքս ոնց կգնահատի: Որոշ ժամանակ խորհելուց հետո, երբ համոզվեցի, որ Վարդան Մամիկոնյանը, եթե այս ամենը իմանար, հնարավոր է նույնիսկ ինձ արհամարհեր՝ կանգնեցի: Ետևից եկողները ինձ հրհրում էին, բայց ուշադրություն չէի դարձնում: Վերջապես շարքն ավարտվեց: Ես կանգնած նայում էի վազողների ետևից ու փորձում էի հաղթահարել նախանձս: Շուռ եկա ու դանդաղ ետ քայլեցի: Երբ Բակուրին մոտեցա, նա դեռ մայթեզրին կռացած նստած էր:

— Ծակոցը չանցա՞վ,— հարցրի ես:

Բակուրը բարձրացրեց գլուխը ու ինձ տեսնելով ուրախ ժպտաց:

— Չվազեցի՞ր,— հարցրեց:

— Չէ,— ասացի ես ձեռքս կողքիս դնելով,— կողքս ծակեց:

— Սուտ ես ասում,— քմծիծաղեց Բակուրը,— կարծես չեմ հասկանո՞ւմ:

— Հասկացողիս տե՛ս,— ասացի ես,— սուտ քիչ առաջ խոսեցի՝ էն ժամանակ հասկանայիր:

— Ե՞րբ,— հարցրեց Բակուրը:

— Մնալուս հաշվով,— բացատրեցի ես,— իբր երկրորդ տարին եմ վեցերորդում սովորում:

— Ես էլ սուտ խոսեցի,— ժպտաց Բակուրը:

Հետո իրար նայեցինք ու ծիծաղեցինք, և Բակուրը տեղից բարձրացավ:

— Դե լավ,— ասաց,— գնանք, ես հանգստացա:

Տարբեր ու շատ հետաքրքիր բաների մասին խոսելով մենք փողոցով ներքև իջանք ու երբ անցնում էինք մայթի խորքում եղած կոշկակարանոցի փայտե խցիկի մոտով, մեկը ներսից ձայն տվեց՝ գլխապատառ էդ ո՞ւր էիք վազում, էրեխե՛ք:

— Չիմացանք,— ասաց Բակուրը գլուխը ներս մտցնելով,— իմ կողքը ծակեց: Դրա համար էլ չվազեցինք:

— Իմն էլ ծակեց,— ասացի ես՝ նույնպես գլուխս ներս խցկելով:

— Սուտ է ասում,— բացատրեց Բակուրը,— նա իմ պատճառով չվազեց:

— Բժիշկ ես, հա՛,— բղավեցի ես,— պրաֆեսըր ես, հա՛... ի՞նչ գիտես, ծակե՞ց, թե՞ չէ: Այ հիմա էլ ծակում է:

— Սուտ է ասում,— կրկնեց Բակուրը,— նա իմ պատճառով շարքից դուրս եկավ:

— Ընկերնե՞ր եք,— հետաքրքրվեց կոշկակարը:

— Չէ,— ասացի ես,— այստեղ, շարքի մեջ ծանոթացանք, բայց երևի ընկերանանք, թե որ իրեն շատ չերևակայի:

— Շատ լավ կանեք,— գովեց կոշկակարը,— ընկերներ փոքր ժամանակ է պետք գտնել, մեծերի մոտ չի ստացվում: Դե ներս մտեք, նստեք, մի քիչ հանգըստացեք:

Երևում է արարքս նրան իսկապես դուր եկավ, որովհետև այդ տարիներին հենց այնպես կոշկակարի խցիկ մտնել-նստելը ու վարպետի հետ զրուցելը իմ տարիքի երեխաների համար անհաս երազանքի պես մի բան էր: Դա մեծերի, այն էլ ամենախելոք ու հարգված մեծերի մենաշնորհն էր, որ դրսից նայողների նախանձըն էր շարժում, և դիտելով ներսում ծանրումեծ նստած ու հանդարտ, լուրջ զրուցողներին, գլխի էիր ընկնում, որ աշխարհում բավականին խելոք, կարևոր գիտելիքներ, թեմաներ կան, որոնց դու անտեղյակ ես, ու սրբազան սարսուռով պատկերացնում էիր այն օրը, երբ դու էլ խելոք, հարգված մեկը կդառնաս և վստահ, տիրոջ իրավունքով կմտնես որևէ կոշկակարանոց ու կասես՝ բարի օր, ուստա Ակոփ, ուրեմն էրեկ մի լավ գիրք կարդացի...

— Մտեք, նստեք,— մեր շփոթված հայացքները տեսնելով, հարազատավարի ժպտաց կոշկակարը,— հիմի սա վերջացնեմ՝ մի կտոր հաց կուտենք:

Կարծես հեքիաթում լինեի: Շատ հաճախ էի տեսել կոշկակարի խցիկում նախաճաշողների, բայց երբեք մտքովս չէր անցել, թե առաջիկա քսան-երեսուն տարում նման պատվի կարժանանամ: Եվ թերթի կես էջի վրա բացված փոքրիկ սեղանը իր լոլիկով, վարունգով, կանաչիով, խաշած ձվերով, պանիր-հացով, աղով ինձ աշխարհի ամենահամով բաներն էին թըվում, որոնց նույնիսկ առանց դիպչելու կարելի էր կշտանալ, քանի որ այս սովորական, բնական գեղեցկությունը, չգիտես ինչու, արդեն իսկ հագեցնում էր: Շփոթված, լուռումունջ ներս մտանք ու նստեցինք: Կոշկակարը հին ներբանը փոխել էր ու հիմա մետաղե ոտքին կոշիկը հարմարեցնելով, ձեռքի սուր դանակով սկըսեց եզրերը կտրել: Լավ էր աշխատում, բայց ինձ առաջին հերթին պատերի նըկարներն էին հետաքրքրում: Քաղաքում եղած կոշկակարները իրենց խցիկների պատերին եղած նկարների պատճառով մի չհայտարարված պատերազմ-մրցույթի մեջ էին: Ամեն մեկը աշխատում էր, որ իր պատերի նկարները ամենակարևորները լինեն, ամենահազվագյուտները, գունավորները: Պատկերասրահների պես բաներ էին այդ կոշկակարանոցները ու այդ տարիների մեր դասագրքերի տված գիտելիքների հետ համեմատած՝ խցիկների պատերը պարզապես հանրագիտարաններ էին: Ամենավերևում «Մայր Հայաստանի» վերատպությունն էր՝ Անիի ավերակների վրա՝ դա բոլոր կոշկակարանոցներում էլ կար: Բայց մի բան, շատ սովորական մի բան, պակասում էր: Չհասկացա, թե ինչ: Հետո գալիս էին գեղարվեստական նկարների վերատպությունները, հետո՝ հայտնի մարդկանց դիմանկարները: Դրանցից մի քանիսը ինձ անծանոթ էին:

— Սա ո՞վ է,— հարցրի մատս մեկի վրա դնելով:

— Վարպետը նայեց նկարին, հիացած ժպտաց ու փոքրիկ մեխերը բերանից հանելով ասաց·

— Նեֆերտիտին է, եգիպտական չըքնաղ թագուհին, փարավոնի կինը,— ու պատմեց, թե որտեղ է հիմա գտնվում այդ արձանիկը, ովքեր են գտել և ինչ է նշանակում այդ բառը:

— Իսկ սա՞,— հարցրի ես,— մեր շենքի կոշկակարանոցում սրանից էլ չկա:

— Ալբերտ Էյնշտեյնն է, աշխարհի ամենամեծ ֆիզիկոսը: Հարաբերականության տեսության ստեղծողը: Շատ մեծ մարդ է, ատոմային ռումբը նրա տեսության շնորհիվ ստեղծեցին:

— Մեծ մա՛րդ,— փնչացրի ես,— «Ատոմային ռումբը ամերիկյան իմպերիալիստների ձեռքին մի ահավոր զենք դարձավ, որի օգնությամբ նրանք նպատակ ունեն ծնկի բերել աշխարհի առաջադեմ մարդկությանը, սակայն խորհրդային անհաղթ բանակը»... ու հանկարծ գլխի ընկա, թե կոշկակարանոցում ինչ է պակասում,— բա Ստալինի նկարը ո՞ւր է,—շը-



Նկարները՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



վարած հարցրի ես:

— Թերթը կարդալու համար է, անգիր ինչի՞ ես անում,— ասաց կոշկակարը,— իսկ Ալբերտ Էյնշտեյնը մեղավոր չէ, որ մարդիկ իր հայտնագործությունից սխալ օգտվեցին:

— Բա Ստալինի նկարը ո՞ւր է,— նորից հարցրի ես՝ նրա ասածները չլսելով,— բոլոր ժամանակների ու ժողովուրդների մեծ առաջնորդի նկարը չկա՞...

Կոշկակարը երևի հարցս չլսեց: Ձեռքի խարտոցով ներբանի եզրերը հավասարեցնում էր ու վերջնական տեսք տալիս: Ես զարմացած Բակուրին նայեցի, բայց նա էլ հատակին երևի կարևոր մի բան էր տեսել, որովհետև կախել էր գլուխը ու հարցիս վրա ուշադրություն չդարձրեց: Հետո նախաճաշեցինք, ու երբ սեղանը հավաքել էինք, կոշկակարը ասաց.

— Դե, իսկ հիմա մի բան արտասանեք:

Բակուրը երգեց: Շատ լավ երգ էր: Այսինքն՝ լավը երաժշտությունն էր, բառերը այնքան էլ չհասկացա՝ չնայած հայերեն էին: Երբ Բակուրը վերջացրեց, կոշկակարը սևեռուն նրան էր նայում:

— Գիտե՞ս ինչ երգեցիր,— կամաց հարցրեց նա:

— Գիտեմ,— ասաց Բակուրը,— բառերը Մկրտիչ Պեշիկթաշլյանն է գրել:

— Ապրես,— ասաց կոշկակարը ու ինձ նայեց՝ հերթը իմն էր:

— Աքիլլեսին Հոմերն երգեց, Ռուստամ Զալին՝ Ֆիրդուսին:

Բոնապարտի անունը գոռ հազար գուսան երգեցին,— գիլ ու զրնգուն սկսեցի ես ու դարձյալ կակազեցի՝ երրորդ տողը միշտ մոռանում էի, չնայած լավ գիտեի, որ կայծակների ու մրրիկների մասին է խոսվում:— Շարունակությունը ո՞նց էր,— հարցրի Բակուրին,— երրորդ տողը միշտ մոռանում եմ:

— Չեմ հիշում,— ասաց Բակուրը,—ես էդ բանաստեղծությունը չգիտեմ:

— Յնդե՞լ ես,— բղավեցի ես,— էդ բանաստեղծությո՞ւնը... չգիտե՞ս ինչ բանաստեղծություն է, ո՞ւմ մասին:

— Դե, լավ, լավ,— հանգստացրեց կոշկակարը, արագ մեջ ընկնելով ու Բակուրին նայեց շատ ուշադիր,— հայր ունե՞ս,— հարցրեց նա:

— Ունեմ,— չգիտես ինչու ցածր ասաց Բակուրը:

— Էստեղ է՞,— հարցրեց կոշկակարը:

— Չէ,— ասաց Բակուրը ատամները սեղմելով,— հեռու տեղ է:

Կոշկակարը շոյեց Բակուրի մազերը, հետո գլուխը իրեն քաշեց ու սեղմեց կրծքին: Կարծես ինքը նրա հայրը լիներ: Ոչ մի բան չէի հասկանում: Անընդհատ նրանց հետ էի եղել, բայց պարզ զգացի, որ այս մարդիկ ինձանից թաքուն ինչ-որ գաղտնիք ունեն: Անհասկանալի էր: Բակուրը սեղմվել էր կոշկակարին, որը շոյում էր նրա գլուխը ու հարազատավարի, համարյա հայրավարի ասում էր.

— Դե լավ, լավ, հանգստացիր, որդի, հանգստացիր, էսպես չի մնա, կփոխվի ամեն ինչ: Դու ինձ հավատա, որդի, հավատա, ժամանակները կփոխվեն...

— Ախր ե՞րբ, է՜, երբ,— հարցրեց Բակուրը, ու չնայած դեմքը չէի տեսնում, քանի որ կոշկակարին էր սեղմել, զգացի, որ արտասվում է:

Ծշմել-մնացել էի: Չէի հասկանում ինչ է կատարվում, բայց նաև չէի ուզում հարցնել: Այսինքն՝ հարցնել շատ էի ուզում, բայց Բակուրի ձայնի մեջ այնքան ցավ կար, որ լեզուս, ասես, կուլ տվեցի: Սուսուփուս դուրս եկա կոշկակարանոցից՝ զգալով, որ այս մարդկանց հիմա մենակ է պետք թողնել, որ ես, չգիտեմ ինչու, ավելորդ եմ: Իհարկե, ցավալի էր այդպես մտածելը, բայց եթե ստացվել էր՝ ի՞նչ կարող էի անել:

Դրսում արևոտ ու պայծառ օր էր: Ամառը նոր էր սկսվում: Շատ էի սիրում տարվա այս եղանակը: Երբ դեռ շոգերը, իսկական շոգերը վրա չեն տվել, բայց երկինքը, օդը պայծառությամբ, շլացուցիչ մի պայծառությամբ էին հագեցած լինում, ու լույսը շատ էր լինում և մի տեսակ զրնգուն: Որքան էլ մտածեցի, չկարողացա պարզել, թե այդ ո՞նց է լինում, որ մարդ արարածը՝ շրջապատված այսպիսի փառավոր գեղեցկությամբ, տառապում է, իրեն դժբախտ է զգում: Այդ բանը գլուխս չմտավ:

Կոշկակարանոցից դուրս եկավ Բակուրը ու ինձ ձայն տվեց:

— Ո՞ւր ես,— բղավեց նա,— ի՞նչ ես անում:

Բակուրը ժպտում էր, ու ես ուրախացա, որ տհաճությունները վերջացել են: Հետո կոշկակարանոցում մի հետաքրքիր զրույց սկսվեց: Վարպետը պատերին փակցված նկարները ցույց տալով մեզ՝ Լեոնարդո դա Վինչի, Միքայել Նալբանդյան, Պեստել անուններով մեծ մարդկանց մասին պատմեց և Մոնա Լիզա հրաշագեղ գեղեցկության տեր մի կնոջ, որը խորհրդավոր ու անբացատրելի ժպիտ է ունեցել: Համաձայնեց ինձ հետ, որ Վարդան Մամիկոնյանը մեծ հերոս է, բայց նաև ուրիշ հերոսների անուններ տվեց՝ Րաֆֆի, Զարենց, Գևորգ Չաուշ, Անդրանիկ: Դրանց մասին ոչինչ չէի լսել, բայց Բակուրը գիտեր: Զարմացա միամտությանս վրա, որ հավատացել էի, թե Բակուրը արդեն երեք տարի է վեցերորդում է սովորում: Ախր պարզ երևում էր, որ շատ խելոք տղա է ու գքեր կարդացած:

— Տեսեք,— ասաց կոշկակարը,— ձերոնք վերադառնում են:

Դուրս նայեցի ու տեսա, որ վազողները ետ են գալիս:

— Գնանք-տեսնենք ի՞նչ էր եղել,— առաջարկեցի Բակուրին,— գոնե իմանանք ո՞ւր էինք վազում:

Կոշկակարին շատ ջերմ հրաժեշտ տվեցինք: Նա էլ մեզ: Առաջարկեց երբեմներբեմն իրեն այցելության գնալ, հետո ասաց, որ տղաները աղջիկներից տարբերվում են նաև նրանով, որ բե՛րանբաց չեն ու ոչ էլ շատախոս: Այդ խոսքերը ավելիս միայն ինձ էր նայում: Գլխի ընկա, թե ինչ է ուզում հասկացնել, ու ասացի, որ այստեղ տեսածների մասին դրսում չեմ ծավալվի: Կոշկակարը ծիծաղեց, թփթփացրեց ուսիս ու հիշեցրեց երբեմն-երբեմն իրեն այցելելու խոստման մասին: Շատ ջերմ հրաժեշտ տվեցինք ու դուրս եկանք: Վազող տղաների խումբը բավականին առաջ էր անցել, ու մենք շտապեցինք հասնել նրանց: Դեռ մինչև մոտենալը արդեն նախանձում էի: Աշխույժ խոսակցությունից ու ծիծաղից գլխի ընկա, որ նրանք, ինչ-որ լավ բան են ձեռք բերել և արշավը խմբի համար հաջող է ավարտվել: Բանից պարզվեց, որ «Խլամանոց» էին գնացել: Այդպիսի մի տեղ կար, ուր բերում էին գործարանների արտադրած խոտանը կամ թափոնները ու վագոնները բարձելով ինչ-որ տեղ տանում: Այդ թափոնների ու խոտանների մեջ երբեմն շատ արժեքավոր բաներ էինք ձեռք բերում: Ահա հիմա էլ հազվագյուտ մի բախտի էին արժանացել: Չգիտես ինչպես իմացել էին, որ վագոնները խոտանված առանցքակալներ են բարձում: Դա հազվագյուտ հաջողություն էր ու հիմա բոլորի ձեռքերին նիկելած ու փայլուն գնդիկներ կային: Եվ ոչ միայն ձեռքերին, քանի որ բոլորի շալվարները գրպանների ծանրությունից կախ էին ընկել: Նախանձից տըրաքվում էի: Չգիտեի, թե դրանցից մի

քանի հատ ձեռք բերելու համար ի՞նչ անեմ: Կովելով ոչինչ չէր ստացվի, որովհետև զգացի, որ սրանք հիմի բոլորը միասին են, նույն գործն անելով հարազատացել ու միաձուլվել էին: Այնպես որ, եթե մեկին դիպչեի, մյուսները վրա կտային: Ուրիշ բան էր պետք մտածել, բայց նախանձը ուղեղիս աշխատանքը արգելակել էր: Մի կարճ, բայց ոգևորված ելույթ ունեցա տղաների անշահախնդիր բարեկամության ու ընկերության թեմայով, սակայն շան տղերքը արհամարհաբար ժպտում էին, հասկացնելով, որ հենց այնպես ոչինչ էլ չեն տա: Հիշեցի, որ գրպանումս գրչահատ ունեմ: Հակառակի պես էլ ամենասիրած իրս էր: Դանդաղ ձեռքս գրպանս տարա ու գրչահատը հանելով՝ սկսեցի չրխկոցով փակել-բացել: Շատ լավ բան էր՝ փայլուն և նախշազարդ կոթով: Արհամարհական ժպիտները շան տղերքի երեսներին սառեց: Հըմայված դանակիս էին նայում:

— Փոխե՞նք,— հարցրեց խմբի ամենատարիքոտներից մեկը ինձ մոտենալով ու մյուսներին մի կողմ հրեց:

— Նայած ինչ կտաս,— ասացի ես,— էս ձևի բան ոչ մի տեղ չես գտնի:

— Որ շատ ման գամ՝ կգտնեմ,— շըրթունքները լպստելով ասաց այդ մեկը:

— Որ հարյուր տարի ապրելու լինես ու հարյուր տարին էլ ուրիշ բանի վրա չըծախսես՝ ման գաս, էլի չես գտնի:

— Հայուր տարի՜,— քրքջաց այդ մեկը,— տես ի՞նչ է ասում, գրազ կգամ, որ երկու տարի ման գալուց հետո կգտնեմ, ամենաշատը՝ երկուսուկես:

Քրքջալու հերթը իմն էր, ու ես այդպես էլ վարվեցի:

— Այ թե սե՜ց,— իբր շնչահեղձ եղա ես,— այ թե սե՜ց... գրազ կգամ, որ իննսունինը տարում էլ չես գտնի:

Հետո նա տարիների քանակը քիչ-քիչ ավելացրեց, ես՝ պակասեցրի ու երբ համաձայնության եկանք, որ հիսուն տարում այդպիսի գրչահատ գտնել հնարավոր է, պայմանով, որ այդ հիսուն տարիներին որոնելուց բացի կողմնակի ոչ մի բանով չես զբաղվի՝ ներածական մասը ավարտած համարեցինք ու անցանք լուրջ սակարկելուն: Սա փոխանակման ամենակարևոր մասն էր, ամենագեղեցիկ ծիսակատարությունը: Մոտակայքում եղած ծառի ստվերում հարմար տեղավորվելուց հետո առևտուրը սկսվեց: Խմբի տղաներից մեկը, որ հավանաբար հիմար էր կամ էլ վատ մարդ՝ փողի մասին խոսք բացեց ու ասաց, որ մոտը թղթադրամ ունի, բայց մեր արհամարհական հայացքները տեսնելով՝ կարկամած լռեց: Փոխանակություններում դրամը ոչինչ էր, անարժեք մի բան: Երկար վեճերից, սեփական կյանքից ու փորձից զանազան պատմություններ մեջբերելուց հետո փոխանակությունը կայացավ: Ես ստանում էի քըսան գնդիկ, ընդորում՝ տասը ամենամեծերից ու անթերի նիկելած՝ վրաները ոչ մի ժանգ կամ քերծվածք, ու երկու պաղպաղակ: Փոխարենը տալիս էի փայլուն ու նախշազարդ կոթով գրչահատս: Ուշադիր զննելով նիկելի որակը ու չափսերը՝ ես մեկ-մեկ հաշվեցի գնդիկները ու գըրպանս լցրի (շալվարս կախ ընկավ, ու դա ինձ երջանկացրեց՝ նրանց շալվարներն էին կախ ընկնում, ում գրպանում մի բան կար), քիչ հեռվում եղած պաղպաղակավաճառից երկու «Էսկիմո» ստացա ու գըրչահատս նոր տիրոջը հանձնեցի: Շատ գոհ ու հարգանքով միմյանց հրաժեշտ տվեցինք:

— Բայց գրչահատը ափսոս էր,— ասաց Բակուրը, երբ մենակ մնացինք:

— Մեծ բան էր,— հնարավորին չափ անփույթ ասացի ես,— հանկարծ մի տեղից ավելի լավը գտնեմ,— ու նրան պարզեցի երկրորդ «Էսկիմոն»:

Հետո բաժանեցինք գնդիկները, ու չնայած ուզում էի մեծերից ինձ ավելի շատ պահել, բայց Վարդան Մամիկոնյանի արհամարհական հայացքը տեսա, ու մոտըս եղածները հավասար կիսեցինք: Գնդիկները շխկշխկացնելով, զրուցելով փողոցով ներքև իջանք: Կոշկակարանոցում պատահածը ինձ շատ էր հետաքըրքրում, և երբ այդ մասին Բակուրին հարցրի, նա ասաց, որ հորը, չնայած աշխարհի ամենաազնիվ ու լավ մարդն է, հեռու տեղ են աքսորել: Եվ նորից սարսափելի տխրեց: Մխիթարելու համար բառեր էի որոնում, բայց հանկարծ հիշեցի, որ ախր ես էլ վիշտ ունեմ՝ հայրս մեզանից առանձին էր ապրում, և վատ չէր լինի, եթե ինչ-որ մեկը ինձ մխիթարեր: Ձեռքս անխոս դրեցի Բակուրի ուսին: Քիչ քայլելուց հետո Բակուրն էլ ձեռքը իմ ուսին դրեց: Հենց այդպես անխոս էլ քայլում էինք, և չնայած արևոտ ու ջինջ օր էր, բայց ես հանկարծ այն զգացողությունն ունեցա, թե ինչ-որ մեկը կամ ինչ-որ բան խցկվել է մեր ու արևի արանքում ու վրաներս ստվեր գցել..

**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

# ԱՇԱԿԵՐՏՆԵՐ ԲՈԼՈՐ ԴՊՐՈՑՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

Ես հիմա մի մտահոգություն ունեմ, սիրելի աշակերտներ, ամեն կերպ շահել ձեր համաձայնությունը, որ սովորելն անհրաժեշտություն է: Սովորել՝ ինչ էլ լինի, ինչ գնով էլ լինի, ինչ իրավիճակում էլ լինի: Իսկ գիտե՞ք, թե ինչու եմ հատկապես հիմա այս խնդրով մտահոգված: Որովհետև ես էլ կույր չեմ և տեսնում եմ այն ամենն, ինչը չի վրիպում նաև ձեր աչքից՝ բակում, փողոցում, դպրոցում, հարևանական ու բարեկամական շրջապատում, խոսքս այն երևույթների մասին է, որոնք բացասաբար են անդրադառնում ձեր ներաշխարհի վրա, ձեզ ստիպում են այլ կերպ մտածել, քան արդար տրամաբանությունն է պահանջում: Դուք էլ անշուշտ լսել եք կաշառակերության, ծանոթով գործեր գլուխ բերելու, աթոռամոլության և այլնի մասին: Առնվազն անմտություն է ձեր ներկայությամբ ժխտել դրանց գոյությունը կամ էլ թե չէ՝ ընդհանրապես լռել դրանց մասին: Միևնույն է, վաղ թե ուշ դուք ամեն ինչ իմանալու եք: Եվ ստացվելու է շատ տհաճ մի իրավիճակ: Մենք ձեզանից թաքցնելու ենք այն, ինչը դուք արդեն գիտեք: Եվ իմանալով՝ դուք ձեզ հարց եք տալու՝ իսկ ինչո՞ւ են թաքցնում: Դուք սկսելու եք չվստահել մեզ՝ մեծերիս, իսկ երբ երկու կողմերը միմյանց չեն վստահում, ապա ձախողվելու է նրանց համագործակցությունը, տվյալ դեպքում՝ ձեր սովորելն ու դաստիարակությունը: Ես գիտեմ, որ անարդարություններով հարուստ մեր աշխարհում միայն սովորելու միջոցով ծայրահեղ դժվար, եթե չասեմ՝ անհնար է հասնել երազանքի, նպատակի իրականացմանը: Սա ասում եմ, որպեսզի ձեր մեջ ծնվի մի բնական ու տրամաբանական հարց. «Իսկ ինչո՞ւ այս հոդվածագիրը իմանալով այդ ամենը, դարձյալ, կրկին ու նորից պնդում է, որ սովորելն անհրաժեշտություն է»: Այո, պնդում եմ, որ դա անհրաժեշտություն է, թեկուզ այն պարզ պատճառով, որ հասարակ, մի պատահական վայրում, ծանոթների ու անծանոթների ինչ-որ մի շրջապատում ինքներդ ձեր անտեղյակությունից ամաչելով «բերաններդ ջուր չառնեք ու նստեք», ինչպես ինձ ասում էր դպրոցական մի աշակերտուհի: Եվ հետո, պետք է լավատես լինել, որ մեր կյանքում սովորելու անհրաժեշտությունը աստիճանաբար հաղթում է չսովորողի անտումժելիությանը: Կյանքը, գիտությունն ու տեխնիկան այնպես են զարգանում, որ շատ շուտով հենց իրե՛նք չեն կարողանա հանդուրժել տըգետների առաջխաղացումը, աթոռներ գրավելը, իշխանությունը: Կոմպյուտեր աշխատեցնելու համար, օրինակ, այսպես ասած՝ գլուխ է պետք: Եվ ում բարեկամն ուզում ես՝ եղիր, ում ինչպես և ինչքան ուզում ես՝ կաշառիր, միևնույն է, մեքենայի հետ բարեկամ լինելու համար պետք է անպայման նրա «լեզուն» հասկանաս, հակառակ դեպքում՝ միևնույն է, մեքենային կաշառել չես կարող, և այն իր էկրանի վրա բացահայտ կերպով գըրելու է, որ դու տգետ ես: Ժողովուրդն ինքն էլ հասել է մի այնպիսի մակարդակի (կոմպյուտեր ստեղծող, հրթիռներ տիեզերք արձակող, հազարավոր կիլոմետրեր հեռավորության վրա պրոցեսներ կառավարող, սոցիալական ու քաղաքական ինքնագիտակցության եկող ժողովուրդը), որ ինքն էլ դարձել է մանուշակագույն լակմուսի պես զգայուն, նա այլևս, ինչպես երևում է վերջին երկու տարիներին, մեր ողջ երկրում, նաև մեր հանրապետությունում, չի հանդուրժում պետական այն ապաշնորհ պաշտոնյաներին, որոնց ձեռքում է կենտրոնացած իշխանությունը, և ինչու միայն նրանց, կարգերը նույնպես, սխալ օրենքները, սահմանադրության հակասահմանադրական կետերը և այլն:

Ուրեմն՝ չարժե հուսահատվել: Ուրեմն՝ դեռ կարելի է պայքարել լավ սովորելու համար, ուրեմն՝ դեռ կարելի է մտածել հաղթահարելու մասին կյանքի այն սև ու աներևույթ պատերը, որոնց հանկարծակի բախում ես ճակատդ քո երազի ե-




տնից վազելիս: Եվ այստեղ համառություն է պետք, ուժ է պետք, գիտելիքներ են պետք ու նաև... պինդ ճակատ: Եվ պետք չէ տատանվել սովորելու և չսովորելու մտքերի միջև, ինչպես հիմա աշակերտների, կարծում եմ՝ 80 տոկոսը, հատկապես բարձր դասարանցիները:

Որքան ծանր օրեր ապրեց (և ապրում է) մեր ժողովուրդը, և այդ ամենը որքան մոտ է հուսահատությանը: Բայց կարիք կա՞ մեկ անգամ ևս ձեզ ի ցույց դնել մեզ համառորեն դիմադրող բարոյական, քաղաքական ու սոցիալական արգելքներն ու խոչընդոտները: Ես ուզում եմ մի քիչ էլ այլ կերպ մոտենալ դրանց, առանց այն էլ ամեն ինչ այնքան ծանր ու լուրջ է, իսկ ես չեմ ուզում այսպիսի շարադրանքով կնճիռներ ավելացնել ձեր ճակատներին, որոնք ձեզ գուցե դեռ պետք գան: Տեսնո՞ւմ եք, նույնիսկ այսպիսի լուրջ թեմաներ շոշափելիս կարելի է կատակել, և ոչ միայն կարելի է, ինձ թվում է՝ նաև արժե կատակել: Ուրեմն՝ մեր լուրջ զրույցը շարունակենք կատակով: Ուզում եք՝ հիմա ես ինքս կատարեմ սովորելու ու չսովորելու երկմտության մեջ գտնվող Աշակերտի դերը: Ահա, նայեք՝ հագնում եմ նրա դիմակը, վերցնում նրա մտքերը և դուրս եմ գալիս բեմ: Ներկայացման անո՞ւնը: Դե դա այնքան էլ կարևոր չէ: Կարևորը գլխավոր հերոսի՝ Աշակերտի (որի անունը Համլետ է. չեմ հիշում՝ որ դպրոցից) մենախոսությունն է:

ԱՇԱԿԵՐՏ.— Սովորե՞լ, թե՞ չսովորել,— այս է խնդիրը,—

Ո՞րն է հոգեպես ավելի ազնիվ.

Տանել ուսուցչի պարսավանքները և ս(լ)աքնե՞րը...

Ձախ կողմից բեմ է խուժում Ուսուցիչը.

ՈՒՍՈՒՑԻՉ.— «Սովորել, սովորել, սովորել» ասել է Վ. Ի. Լենինը:

Դուրս է վազում բեմի աջ կողմից նույն արագությամբ, ինչպես որ բեմ էր մտել: Այնուհետև, անմիջապես նրանից հետո հայտնվում է Ծնողը և դիմելով հանդիսատեսին՝ բղավում է.

ԾՆՈՂ.— Սովորեք, որ մա՛րդ դառնաք, մա՛րդ, ոչ թե մեր պես...

Նրա խոսքի շարունակությունը չի լսվում, որովհետև նա արդեն վազելով գնացել էր Ուսուցչի ետևից: Հիմա դուք կհարցնեք, թե ուր են նրանք վազում: Միանգամայն բնական հարց է: Ես էլ միանգամայն բնական պատասխան եմ ու-

զում տալ. վազում են՝ կինոթատրոնից դպրոց վերադարձնեն դասից փախած աշակերտներին: Մի պահ բեմը դատարկ է: Այդ ընթացքում ես, խորամանկաբար գիտակցելով աշակերտի դերի ծանրությունը և թե ինչեր են գալու նրա գլխին, հանում եմ աշակերտի դիմակս: Հոդվածագիր եմ՝ հոդվածագիր էլ թող մնամ, ես իմ 10 տարին արդեն... այո, 10 տարի նստել եմ աշակերտական նստարանին:

Բեմի վրա հանդիպում եմ իսկական Աշակերտին, որի փոխարեն փորձում էի արտասանել մենախոսությունը: Իհարկե, ռեժիսորը (թե՞ դպրոցի դիրեկտորը) ինձ զգուշացրել էր, որ սովորելու մասին (իհարկե, իրադրությունը չսրելու համար) ընդհանրապես ոչ մի հարց չտամ Աշակերտին: Սակայն ես, ինչպես բոլոր արտասահմանադրական ժուռնալիստները, սենսացիաներ շատ եմ սիրում և դիմում եմ Աշակերտին, որն, ինչպես երևում է, նույնպես դժվար թե կարողանա վերհիշել իր մենախոսությունը:

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ (ԵՍ).— Ո՞ր դպրոցում եք սովորում:

ԱՇԱԿԵՐՏ.— Չեմ հիշում՝ նացիոնա՞լ, թե՞ ինտերնացիոնալ:

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ.— (Մտքիս մեջ) Ահա խելագար ձևացող մի նոր Կամո: (Բարձրաձայն) Ինչպե՞ս, մի՞թե չգիտեք՝ ձեր դպրոցը հայկակա՞ն է, թե՞ ռուսական:

ԱՇԱԿԵՐՏ.— Չեմ հիշում, երևի՝ ինտերնացիոնալ...

Ես անմիջապես ենթադրում եմ, որ նա սովորում է ինտերնատում, ըստ երևույթին՝ ռուսական: Ուստի՝ շարունակում եմ:

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ.— Կակ վի դումայեծե, բի՞ծ, իլի՞ նե բիծ...

ԱՇԱԿԵՐՏ.— Օյ, նիկավո նենադը բիծ: Մեր ուսուցիչը նիզաշտո մեզ էնքան է ծեծում, բոժե մոյ, որ այդ բառը լսելիս սարսափահար եմ լինում (ծանոթ խոսքեր են, ու ես անմիջապես գլխի եմ ընկնում, թե ով է դրանց հեղինակը: Երևանի 436 դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ Ռ. Կ.-ն):

Աչքս ընկնում է բեմի աջ անկյունում ձեռքուոտքով ինձ ինչ-որ բան հասկացնել ջանացող բարկացած Դիրեկտորին: Բայց ես այս ներկայացումը անգիր գիտեմ ու հանգիստ եմ, որովհետև նրա մուտքին դեռ շատ ժամանակ կա: Ու հանգիստ հարցնում եմ Աշակերտին.

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ.— Ի՞նչ եք կարծում «սովորե՞լ, թե՞ չսովորել»:

ԱՇԱԿԵՐՏ.— Իհարկե, այդ չէ խնդիրը, բայց ինձ թվում է, որ շատ լավ սովորելու իսկի էլ կարիք չկա: Մի թեթև, ուղղակի որպեսզի շրջապատում չխեղճանաս, կողքիններդ որ խոսեն, բերանդ ջուր չառնես ու նստես:

Ոչ, կարծես թե նա չէ, սա ուրիշ աշակերտ է: Եվ նույն պահին հիշում եմ: Այդ նրա խոսքերն են՝ Երևանի № 163 միջնակարգ դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ (ուհի) Մ.Վ.-ինը: Անուն-ազգանունը գաղտնի եմ պահում, պարզ է՝ իրադրությունը չսրելու համար: Բացահայտվում է ևս մի բան. ուրեմն՝ Աշակերտը ոչ թե ինտերնատում է սովորում, այլ հիշյալ դպրոցում:

Հանկարծ բեմը լցվում է բազմաթիվ աշակերտներով: Երկու խմբի բաժանված ճակատամարտում են: Մի խումբն անընդհատ կրկնում է՝ «լինե՜լ», ներեցեք՝ «սովորե՜լ», մյուս խումբը՝ «չսովորե՜լ»: Սովորողների խումբը զինված է գրիչներով, մատիտներով, մի քանիսը՝ նաև ակնոցներով՝ աչքերը պաշտպանելու համար: Չսովորողներն իրենց հերթին զինված են ծանր հրետանիով, որ ծանր մտքեր է կրակում: Ռումբերը (մտքերը) հաճախ ընկնում են հանդիսատեսների շարքերում, ու նրանց մեջ էլ պայթում է... ծիծաղը: Ճակատամարտը տևում է շատ կարճ: Զոհեր չկան: Բեմի վրա մնացել է չգիտեմ՝ Ռ. Կ.-ն № 436 դպրոցից, թե՞ Վ. Մ.-ն՝ № 163 դպրոցից: Նրանից (գուցեև նրանցից) «ինտերվյու եմ վերցնում»:

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ.— Ի՞նչն էր այս ընդհարման պատճառը:

ԱՇԱԿԵՐՏ.— Երկու ծայրահեղական խմբեր, որոնցից մեկը սովորելու ծայրահեղության մեջ է, իսկ մյուսը՝ չսովորելու, բանակցությունների սեղանի շուրջը չկարողանալով հիմնավորել սեփական տեսակետները, դիմել են էքստրեմիստական գործողությունների: Կասկածներ կան, և ոչ անհիմն, որ նրանց կառավարում են դպրոցական մաֆիաները:

Ես փաստացի ապացույցներ եմ պահանջում: Նա ճակատամարտի դաշտից հավաքած ռումբերի բեկորներ է ինձ ցույց տալիս ու կարդում դրանց վրայի ֆիրմա մակագրությունները.

ԱՇԱԿԵՐՏ.— Ռումբ № 1. մակագրու-

թյուն կա վրան. «Սովորեմ-չսովորեմ՝ ընդունվելու եմ: Աստված առողջություն ու երկար կյանք տա պապայիս»: Ռումբ №2. վրան գրված է. «Հորեղբայրս բժշկականում դասախոս է, ասաց, որ առանց փողի էլ գործը մի կերպ գլուխ կգա»: Ռումբ № 3. «Առանց փողի ոչ մի գործ էլ գլուխ չի գալիս»: Ռումբ № 4. «Դասատուներն էլ են կաշառա...», ափսոս, բեկորը ջարդված է: Մի երկու ջարդված բեկոր էլ կա. «... եր ուսուցիչը նիզաշտո մեզ էնքան է ծեծ...», ևս մեկը՝ «...երանդ ջուր չառնես ու նստ...»:

ՀՈԴՎԱԾԱԳԻՐ.— Ձեր ցույց տված բոլոր ռումբերն անստորագիր են, ուստի ես չեմ կարող դրանք իմ հոդվածում որպես փաստացի ապացույցներ օգտագործել: Իսկ հոդվածը խմբագիրը տպագրության չի իջեցնի այնքան ժամանակ, քանի դեռ ես չեմ գտել այդ ռումբերն արտադրողներին ու նաև գործածողներին:

Բեմում հայտնվում է Դիրեկտորը: Ինձ է կշտամբում. «Ի՞նչ արեցիք, ինչո՞ւ արեցիք իրադրությունը: Ավելորդ ներկայացումներ պետք չէ սարքել»:

Դիրեկտորի հետ որոշում ենք համատեղ հանձնաժողով կազմել՝ բացահայտելու համար ընդհարման հրահրիչներին, հայտնաբերելու այն դպրոցները, որտեղ արտադրվում են ռումբերը, գտնելու համար, թե որ ուսուցիչներն են բարենըպաստ հող ստեղծում այդ ռումբերը նետելու համար: Դիրեկտորը նաև որոշում է երկուսիս ստորագրությամբ մի ուղերձ հղել սովորող և չսովորող աշակերտությանը, կոչ անելով ցուցաբերել զգոնություն, զսպվածություն, չենթարկվել կըրքերի: Ուղերձի մեջ մասնավորապես ասված է. «Հարգելի աշակերտներ, պիոներներ և ոչ պիոներներ, հոկտեմբերիկներ և ոչ հոկտեմբերիկներ, կոմերիտականներ և ոչ կոմերիտականներ, ձեր միասնությունը քայքայող տարրերը հենց ձեր մեջ են, ձեր դպրոցում են թաքնված: Մենք կոչ ենք անում փակել այն աշակերտների և ուսուցիչների բերանները, որոնք նման ռումբ են արտադրում: Բռնեք նրանց, ձգեք ականջները, որպեսզի ոչ ոք չկարողանա պառակտել ձեր շարքերը սովորողների ու չսովորողների: Չէ՞ որ սովորողներն ու չսովորողները, գերազանցիկներն ու երկտարեցիները շատ հաճախ միևնույն ինտերնացիոնալ բարեկամության ակումբի անդամներ են, ինտերնացիոնալ բարեկամության հին ավանդույթներ ունեն, որոնք այսօր էլ կենսունակ են ու գործուն: Օրինակներ շատ կան, և այսօր այս լարված օրերին արժե հիշել դրանցից մեկերկուսը: Օրինակ՝ № 102 դպրոցի սովորող աշակերտության ամենա... ներկայացուցիչներից մեկը՝ 9-րդ դասարանցի Ա. Գ.-ն, սիրում է № 114 դպրոցի 8-րդ դասարանցի, վաստակավոր երկտարեցի, կարմիր «2»-ի 2-րդ աստիճանի շքանշանակիր Հ. Ն.-ին: Նրանց մեղմ ասած բարեկամությունը թրծվել է երկար ու կարճ դասամիջոցներին, ամուսնացել են, ունեցել համատեղ... ուզում եմ ասել՝ միասին շարադրություններ են գրել, խնդիրներ լուծել, սովորող Ա. Գ.-ն թելադրել է, երկտարեցի Հ. Ն.-ն՝ սղագրել, այսպիսով խուսափելով չարաբաստիկ «2»-ներից:

Մեկ ուրիշ օրինակ՝ շատ են այն դեպքերը, երբ սովորողներն ու չսովորողները միասին փախել են դասերից, գերազանցիկներն ու երկտարեցիները՝ միասին կինո գնացել: Մի՞թե քիչ են այն դեպքերը, երբ նրանք նաև միևնույն բակում են մեծացել, խաղացել: Նույնիսկ մեկ ընտանիքում են մեծացել գերազանցիկն ու երկտարեցին, ապրել են, եղել ենք քույր և եղբայր, կիսել միևնույն հորն ու ընդհանուր մորը, նույնիսկ նույն կրծքի նույն կաթով սնվել:

Դրությունը պայթյունավտանգ է, այն դուրս է եկել ուսուցիչների ու դիրեկտորների հսկողությունից:

Կրկին դիմելով եղբայրական երկու հանճարեղ ժողովուրդներին՝ սովորողներին ու չսովորողներին, հույս ենք հայտնում, որ նրանք ստեղծված իրավիճակում կցուցաբերեն...»:

Մենք դեռ չենք վերջացրել մեր ուղերձի շարադրանքը, երբ Աշակերտը իրեն շնչասպառ բեմ գցեց ու ասաց, որ պարետային ժամ է հայտարարված. «Ասում են՝ նաստալ կամենդանտսկի չաս ռազումա ի տրեզվիխ րեշենի»: Ես գրիչս հիասթափված ցած դրեցի, ուրեմն՝ գրաքննությունը (ցենզուրա) անցնում է պարետի ձեռքը, և այս հոդվածիս լույս ընծայումը (եթե նույնիսկ խմբագիրը ստորագրի) կհետաձգվի մինչև... Մինչև ե՞րբ: Երևի... մինչև վերջանա այս ներկայացումը:

Աշակերտնե՛ր բոլոր դպրոցների, միացե՛ք:

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԾՆՎԵՑ «ԾԽԱՀԱՅԱՑ» ԲԱՌԸ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Օձուն, Հաղպատ, Սանահին, Ծոճկան, Աքորի, Այրում, Շնող, Մղարթ, Ծաթեր...

Թումանյանի շրջանի գյուղերն ու ավաններն են, պատմական հին-հին անուններ, ճարտարապետական սքանչելի հուշարձաններով հարուստ:

Վերջին մի քանի տասնամյակում, կապված Ալավերդու պղնձաքիմիական գործարանի մեծացման հետ, ընդհանուր ցավերով են տառապում: Թվարկված գյուղերը իրենց հողերը ջրում են Դեբեդի ջրով: Գործարանի ծուխը հասնում է նրանց և դեռ ավելի հեռուն գնում:

1973 թվականի գարնանն էր, Շնողում էի: Դուք երևի չեք լսել, թե ինչ սքանչելի այգիներ ունի Շնողը, դեղձենիների այգիներ: Տարի էր լինում՝ Շնողում դեղձըն այնքան էր խոշորանում, որ հնարավոր չէր տեղավորել ապակե տարաներում՝ կոմպոտ պատրաստելու համար: Շնողի կարմրաթուշ ու բուրավետ դեղձի համբավը շատ հեռու էր տարածվել: Հիմա պատկերն ինչքան է փոխվել:

Գարուն է, ծառերը դեռ «քնած» են, ոչ տերև կա, ոչ պտուղ, բայց էլի մեծ բավականություն է այնտեղ շրջելը: Այգեմիջյան ճամփաներով գնում ես, գնում, դիտում ես իրարից հավասար հեռավորությամբ դեղձենիները, և հոգիդ անդորրով է լցվում: Դեռ մանրամասներ չգիտես ոչ հողի, ոչ ծառերի վիճակի մասին և վայելում ես այգու արտաքին գեղեցկությունը: Մեկ էլ կողքից գյուղատնտեսը ասում է. «1972 թվականի հունիս ամսին 180 հեկտար դեղձի այգին միանգամից տերևաթափ եղավ, կարծես ոչ թե հունիսն էր, այլ սեպտեմբերը, հոկտեմբերը»:

Ինչո՞ւ, ի՞նչն էր պատճառը:

Պատճառը ծուխն էր, որը մեծ քանակությամբ ծծմբական գազ էր պարունա-

կում:

Ծառղ գյուղի ջրհան կայանը գտնըվում է Ախթալայի հարստացուցիչ գործարանի մնացորդների թափման կետում: Ներքևում հորդահոս Դեբեդն է, որտեղից ջուրը բարձրացնում է վերև՝ Ծառղի ու մյուս գյուղերի դաշտերն ու այգիները ջրելու: Ափսոս, բնության դեմ ինչպիսի անողոք վերաբերմունք: Չէ՞ որ ջրի այլ աղբյուր չկա, մեր ունեցածը Դեբեդն է: Իսկ Դեբեդն աղտոտվում է, որովհետև ջրի բերածը նստվածք է տալիս:

Ամռանը, երբ մոտենում ես ծառին, կարծես տերևներին փոշի է նստած: Թաշկինակով մաքրում ես, չէ, փոշին ներսից է: Կեղտաջուրը ծառի արմատներով ներծծվել է և ներսից տերևները փոշեպատել: Կռանում, մի բուռ հող ես վերցնում, ափերիդ մեջ շուռումուռ տալիս: Ամեն ջրելուց հետո գորշավուն նստվածքը նոր շերտ է թողնում: Փըխրեցնելու դեպքում էլ նստվածքն ավելի է մոտենում արմատներին և ավելի շուտ ներծծվում: Ու ծառերը վարակվում են մի հիվանդությամբ, որը կոչվում է «քլորոզ»:

Տեսնո՞ւմ եք՝ բնության մեջ փոխազդեցությունն ինչպես է լավն ու վատը խառնում, հունցում, ի մի բերում ու մարդուն փաստի առաջ կանգնեցնում: Զգուշացիր, ասում է, քո իսկ սխալների դեմն առ, քո բարեկեցության, քո զավակների բարեկեցության համար:

Դեռ պետք է պարզել, երբևէ հնարավո՞ր է մաքրել հողը ծծմբական թթվից, արճճից ու հազվադեպ մետաղներից, որոնք օր-օրի, տարի առ տարի ավելանում են այնտեղ:

Մի աշուն Այրումի այգիներում ես տեսա, թե խեղճ ծառերն ինչ «հնարամտություն» էին բանեցրել ապրելու համար: Դեղձենիներն ու խնձորենիները կարծես թե ելքը գտել էին, ծխից պատսպարվելու համար թեքվել էին ծխին հակառակ ուղղությամբ: Ծխահայաց կողմում ոչ տերև էր աճում, ոչ պտուղ, մինչդեռ ծխից քիչ թե շատ պատսպարված մասում հատուկենտ պտուղ էր բռնել:

«Ծխահայաց». նկատեցի՞ք, ինչ բնական ձևով օգտագործվեց այս բառը: Կարծես վաղուց է մեր բառապաշարում եղել: Այնինչ՝ հայերեն բառարաններից և ոչ մեկում առայժմ չկա: Քանի որ արդեն տըպագիր խոսքում գործածվել է, անշուշտ, նոր բառարաններում տեղ կգտնի:

Ես երկար նայում էի ծառին, որը ճիգ ու ջանք էր թափել կորանալու, որպեսզի այն կողմից, որտեղից ծուխն է գալիս՝ ծխահայաց կողմից, ծխնելույզներին նայող կողմից, ինչքան հնարավոր է շփման փոքր մակերես ունենա:

Նոր երևույթները նոր բառեր են ծընում: Ինչպես որ ծառն է ստիպված պայքարի նոր ձևեր գտնել կյանքը երկարացնելու համար: Անգնահատելի է հարմարվողականության օրենքը բնության մեջ, բայց նրա հնարավորությունները ևս անսահմանափակ չեն: Ծառը ինչ-որ չափով կպաշտպանվի ծխից, բայց՝ ոչ տևական ժամանակով: Ի վերջո նրա դիմադրողականությունը կպառվի, և նա, բազմաթիվ ծառերի նման, կչորանա, պտղատու ծառից կվերածվի վառելիքի:

Այրումի այգիներում առաջին շարքերի ծառերն ավելի ցածլիկ են, քան ետևի շարքերինը, որովհետև առաջին շարքերում ծխի ավելի մեծ բաժին են կլանում:

Եվ ինչ՝ կորուստը կրկնակի է լինում: Քիմիական այն նյութերը, որոնք օդի ու ջրի միջոցով վնասում են մարդկանց և գյուղատնտեսությանը, ապականում օդը, ջուրը և հողը, խելացի օգտագործվելու դեպքում կարող են շահ բերել:

Կարող են, բայց չգիտես ինչու, գործարանները կառուցելիս մաքրման կայանները թողնում են ամենավերջում: Չգիտես ինչու, երբ սկսում են պղինձ, ոսկի ձուլել կամ հանքաքարից մոլիբդենը զատել, քիմիական պարարտանյութեր արտադրել, նախատեսված, բայց չկառուցված մաքրող-զտող կայանքների մասին չեն մտահոգվում: Միայն թե արտադրությունը շուտ սկսվի: Մինչդեռ ոչ պակաս կարևոր են լավ կառուցված և լավ աշխատող մաքրման սարքերը: Թե՛ բնության և թե՛ մարդու առողջության համար են կարևոր: Եթե հիմա, դու, սիրելի ընթերցող, ըմբռնես, թե մեր հայրենիքն ինչպիսի կորուստներ է կրում մարդկանց անփութության պատճառով, ապա համոզված եմ, երբ ժամանակը գա ու ինքդ լինես նախագծող, ջանք չես խնայի ամենաժամանակակից կայաններ ստեղծելու: Իսկ եթե լինես շինարար ինժեներ, մեծ խնամքով ու ճշգրտությամբ կկառուցես դրանք:

Չլինես հանդուրժող, թույլ չտաս կիսատ-պռատ գործարանները աշխատեն: Դու ունես այդ իրավունքը: Դա քո քաղաքացիական պարտքն է:

Բարեկամներ, ձեզ սպասում է հետաքրքիր ծանոթություն Գիննեսի ռեկորդների մասին գրքի հետ: Լսե՞լ եք այդպիսի բան: Գրքում զետեղված են այն ամենանշանավոր դեպքերն ու դեմքերը, որոնք գոյություն ունեն աշխարհում: Ասենք՝ կան այսպիսի ռեկորդներ. գորտի ամենահեռավո՛ր ցատկը, մարդու ամենաերկար մազերը, աշխարհի ամենամեծ ցազարը... Երկար ժամանակ այդ գիրքը, ի դեպ՝ ռեկորդները նույնպես, մեզ մոտ համարվում էին թեթևամտություն: Այդպե՞ս է, թե ոչ, կորոշենք հետո: Իսկ առայժմ բացենք այդ սքանչելի գիրքը և թերթենք: Գիննեսի ռեկորդների առաջին գիրքը լույս է տեսել 1959 թվականին:






Գիրքն իր անունը ստացել է Բենջամին Գիննեսի՝ իռլանդական խոշորագույն ընկերություններից մեկի պրեզիդենտի անունից: Ինչպե՞ս ծնվեց գիրքը: Ահա ինչպես: Մարդկանց հատուկ է վիճելը, և հատկապես այն մասին, թե ո՞վ է «ամենաամենան»: Նման վեճերում, որպես կանոն, ճշմարտություն չի ծնվում: Որպեսզի լուծվեն այն անլուծելի թվացող վեճերը, Բենջամին Գիննեսը մտածեց ստեղծել նման անսովոր մի գիրք-ուղեցույց: Գրքի ընդհանուր տպաքանակը արդեն կազմում է ավելի քան 50 միլիոն:

Հեշտ չէ գրանցվել Գիննեսի գրքում: Մի անգամ Կենտրոնական հեռուստատեսությամբ ցուցադրվեց տեսասյուժե՝ չկայացած ռեկորդակրի մասին: Դա մի ջահել եղնիկ էր, որին մի քանի ժամով մտցրել էին ամանեղենի կրպակը (հիշեք «Փիղը ամանեղենի կրպակում» արտահայտությունը): Եղնիկը կրպակում ոչինչ չկոտրեց, ինչին բոլորն էին սպասում, և ռեկորդը չգրանցվեց, որովհետև անմեղ կենդանին ամբողջ ընթացքում հանգիստ կանգնել էր միևնույն տեղում և ծամում էր հատակին նախապես գցած խոտը: Իսկ ըստ «մրցության» պայմանների պետք էր, որ եղնիկը քայլեր ամանեղենի կրպակում:

Գիրքը բաժանվում է 12 հիմնական գլուխների: Առաջինը նվիրված է մարդու կազմվածքի յուրահատկություններին: Օրինակ, ամենաբարձրահասակ մարդն աշխարհում Ռոբերտ Պերշինգ Ուոդլոուն է, որը ծնվել է 1918 թվականի փետրվարի 22-ին, Ալտոնում, ԱՄՆ-ի Իլինոի նահանգում: 22 տարեկանում նրա հասակը 272 սմ էր, իսկ քաշը՝ 222,7 կգ:

Երկրորդ գլուխը կենդանիների մասին է: Մենք այստեղ տեղեկանում ենք, որ աշխարհի ամենածանր կատուն ծնվել և ապրել էր Քուիսլեդ նահանգում (Ավստրալիա) և անունը Խիմմի էր: 1982 թվականի հունիս ամսին նրա քաշն արդեն 20,7 կգ էր: Պարանոցի հաստությունը կազմում էր 38,1 սմ, իրանինը՝ 81,3 սմ, իսկ երկարությունը՝ 96,5 սմ: Տեսնո՞ւմ եք, պարզվում է, որ կատուներըն էլ կոնք ունեն...

Ամենաերկարատև ծիածանը, ինչպես նշված է գրքի հաջորդ՝ բնության երևույթներին վերաբերող բաժնում, պահպանվել է Հյուսիսային Ուելսի երկնքում, ամբողջ 3 ժամ: Դա եղել է 1979 թվականի օգոստոսի 14-ին:

Չորրորդ բաժինը տիեզերքի մասին է: Այստեղ զետեղված են Յուրի Գագարինի՝ աշխարհում առաջին տիեզերագնացի, և

Սերգեյ Կորոլյովի՝ Երկրի առաջին արհեստական արբանյակը ստեղծողի լուսանկարները:

Հաջորդ բաժինը մեզ ծանոթացնում է գիտական աշխարհի նվաճումներին: Փորված անցքերից ամենապստլիկը 1000 անգամ բարակ է մարդու մազից: Այդ չնշմարվող անցքի մասին 1977 թվականի օգոստոս ամսին հաղորդել է «Ինկո Նիկել Կոմպանիան»:

Հաջորդ բաժինը նվիրված է գրականությանն ու արվեստին: Ամենաաղմկոտ ռոք-համերգը տվել է «ԻՀԵ ԾՀՕ» խումբը: Այդ յուրահատուկ ռեկորդը գրանցվել է լոնդոնյան մարզադաշտերից մեկում, որտեղ և հանդես էր գալիս խումբը: Սարքավորումների հզորությունը եղել է 76 հազ. վատտ: Աղմուկն ապահովում էին ութսուն հատ 800 վատտանոց և քսան հատ 600 վատտանոց ուժեղացուցիչներ: Իմիջիայլոց ասենք «Վեգա» ստերեոնվագարկիչի հզորությունը կազմում է 8—10 վատտ ամեն ալիքում:

Շինարարությանը վերաբերող բաժնի ռեկորդներից մեկը պատկանում է ձնե դղյակին: Այն կառուցել էին 1980—81 թըվականների ձմռանը, Ճապոնիայում: Այդ դղյակի կառուցման համար ծախսվել էր 160 տոննա ձյուն: Այն կառուցել էին 800 մարդ՝ 50 բուլդոզերի օգնությամբ:

Տեխնիկայի բաժնում ամենաարագընթաց մոտոցիկլը «Դունստոլ Սուզուկի ԳՍ 100 ՑՍ»-ն է, որի արագությունը 248,1 կմ/ժ է:

Բաժին՝ նվիրված բիզնեսին և զանազան այլ առարկաներին: Այստեղ համարյա ամեն բան վերաբերում է գոյություն ունեցող թանկարժեք իրերին և ամենաբարձր գներին: Ահա կարդում ենք. լուցկու ամենահին պիտակը հայտնվել է աշխարհում 1830 թըականին, իսկ պիտակի ամենամեծ քանակությունը՝ 280 հազար հատ, ԱՄՆ-ից հավաքորդ Ռոբերտ Ջոնսոնի մոտ է:

Մարդկային հնարավորություններին վերաբերող բաժնում գտնում ենք այսպիսի հետաքրքիր տեղեկություններ. «ամենաարագընթաց» կինը Վալենտինա Տերեշկովան է: Մի անգամ նա սուրացել է 28115 կմ/ժ արագությամբ: Դա տեղի է ունեցել 1963 թվականի հուլիսի 16-ին, իսկ նրան «օգնողը», «Վոստոկ—6» տիեզերանավն էր:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ




Քաղաքակրթությանն ու օրենքներին վերաբերվող բաժնում հանդիպում ենք տարօրինակ և տխուր մի իրողության. ազատազրկման ամենաերկար ժամկետով դատապարտվել է Դուդլի Ուեն Կիզերը Տուսկալոոսից՝ ԱՄՆ-ի Ալաբամա նահանգից: Կատարած մի շարք հանցագործությունների համար 1981 թվականի դեկտեմբերի 4-ին նա պատժվել է 10 հազար տարվա ազատազրկմամբ:

Իսկ վերջին՝ սպորտի և խաղի բաժնում կարդում ենք. ամերիկյան համալսարաններից մեկի ուսանողներ Ջոն Կարրը և Ռոբերտ Պասիատին 50 ժամ և 4 րոպե անդադար խաղում էին սեղանի ֆուտբոլ: Խաղը շարունակվել է 1982 թըվականի ապրիլի 30-ից մինչև մայիսի 2-ը: Սակայն ով է հաղթողը՝ չի ասվում: Անհայտ է՝ հաղթել է բարեկամությունը:




Առջևի թաթերով ժայռի կատարին հենված և գլուխը վեր ցցած, ոռնացող գայլը դարձել է թուրք երիտասարդության ֆաշիստական կազմակերպության խորհրդանիշ: Քաղաքական սպանությունները, ջարդերը, թալանները, մարդկանց առևանգումը նրա համար դարձել են սովորական աշխատանք: Այդ կազմակերպությունն իր մասնաճյուղերն ունի նաև Թուրքիայից դուրս, տարբեր երկրներում: Նրա անդամներն իրենց անվանում են «Բոզկուրթ», որը թարգմանաբար նշանակում է «գորշ գայլ»:

Հովիվների, խաշնարածների համար ատելի ու չար այդ գիշատիչ գազանը թուրքական հեքիաթներում չափազանց հարգի է: Համաձայն հին ավանդության՝ թուրքերն իրենց համարում են գայլի ժառանգորդներ: Հիրավի, թուրքական մի առասպելում ասվում է, թե գորշ գայլը նրանց ցեղը հանելով ճահճից, տարել է դեպի ազատության և երջանկության էրգենիկոն կոչված աշխարհը:

Գորշ գայլերի հոգևոր հայրը տխրահռչակ Ալփառսլան Թյուրքեշն է, որն իր բարեկամների և համախոհների շրջանում բերանացի առկոչումներ է բերում Հիտլերի մարդատյաց «Մայն կամֆ» գրքից: Դա բոլորովին էլ զարմանալի չէ, քանի որ գնդապետ Թյուրքեշը 1944 թ. գլխավորել է թուրքական նացիոնալ-սոցիալիստական, այսինքն՝ ֆաշիստական շարժումը և եղել է գեստապոյի հավատարմատարը: Թուրքական ֆաշիզմի այդ ֆյուրերն ամեն ինչ կատարում էր ընդօրինակելով Հիտլերին:

Հենց Թյուրքեշի տիպի գործիչներն էլ 60-ական թվականներին Թուրքիայում ստեղծեցին կուսակցություններ, որոնք իրենց ծրագրերով ոչնչով չեն տարբերվում հիտլերյան ֆաշիստական կուսակցությունից: Նրանցից մեկը («Ազգային շարժման պարտիզան») իր ծրագրի 11-րդ էջում նշում է երիտասարդությանն ազգայնական, շովինիստական ոգով դաստիարակելու անհրաժեշտության մասին: Այդ կուսակցությանը հարած երիտասարդությունը հայտնի է իր ծայրահեղ ազգայնական հայացքներով, իսկ նրանց գաղափարական հիմքը դարձել է պանթուրքիզմը: Այդ երիտասարդությունից կազմավորվեց «Բոզկուրթլար» (այսինքն՝ գորշ գայլեր) միությունը, որն ամեն ինչով հիշեցնում է ֆաշիստական «Հիտլեր յուգենդ» կազմակերպությունը: Նրա նախագահը դարձավ Թյուրքեշի նվիրյալ կողմնակից Կըլըչ օղլին, որն էլ ղեկավարեց «գորշ գայլերի» ահաբեկիչ խումբը: Հանրահայտ է, որ պանթուրքիստները երազում են ստեղծել մի հզոր, միաձույլ պետություն, որը տարածվի Ալթայի երկրամասից մինչև Միջերկրական ծով և Ուրալից մինչև Բոսֆոր՝ ընդգրկելով խորհրդային Միջին Ասիան, Ադրբեջանը և այլն:

Իրենց նպատակներին հասնելու համար նրանք աշխարհի տարբեր ծայրերում ստեղծել են մասնաճյուղեր և զբաղվում են պատանեկության գաղափարական այլասերմամբ, գործելով շատ համարձակ և լկտիաբար: «Գորշ գայլերի» կամակատար գայլուկները վաղ հասակից հատուկ գաղտնի ճամբարներում ու դըպրոցներում սովորում են տիրապետել զեն-

քի, կարատեի հնարքներին և այլն: Գորշ գայլուկները օգտվելով իրենց անչափահաս լինելուց, ինչը նրանց հաճախ փրկում է օրինական պատժից, կատարում են ծանր հանցագործություններ՝ սպանություն, հրկիզում, բռնություններ: Թուրքիայի սահմաններից դուրս գործող գորշ գայլերի խմբերը ծպտված են և հանդես են գալիս որպես «խուլիգաններ, անկարգներ»: Նրանց շարքերը համալրվում են հասարակության տականքներից, հանցագործ տարրերից, սակայն, որքան էլ ծպտվում են, այնուամենայնիվ նրանց առկայությունը բացահայտվում է իրենց յուրահատուկ գործելակերպով: Մի՞թե Սումգայիթում կատարված դեպքերը չեն հիշեցնում գայլուկների ոճը:

Այժմ էլ «գորշ գայլերը» ակտիվորեն գործում են պանթուրքիզմի կազմակերպիչներին հետաքրքրող շրջաններում:

Հիշենք մոտ անցյալում աղմուկ հանած «գորշ գայլ» Մահմեդ Ալի Աղջայի Հռոմի սուրբ Պետրոսի հրապարակում արձակած չորս կրակոցները, որոնց արձագանքը լսվեց ողջ աշխարհում: Ահաբեկիչ Աղջան մինչ այդ Թուրքիայում իրագործել էր մի շարք պրոգրեսիվ գործիչների սպանություն, սակայն անպատիժ մնալով, փախել էր Ստամբուլի «Արծիվ» բերդից, նպատակ ունենալով սպանել Հռոմի պապ Հովհաննես Պողոս 2-րդին, բայց ձերբակալվեց և կանգնեց դատարանի առաջ: «Գորշ գայլերն» Արևելյան Անատոլիայում իրագործում են քրդերի, հույների, հայերի դեմ ծրագրված հալածանքները:

Տարակույս չկա, որ այդ նոր ֆաշիստների դեմագոգիկ գաղափարները, որպես կանոն, արձագանք են գտնում ամենահետամնաց ու մութ շրջաններում և դրսևորվում ամենաանսպասելի վայրերում:

«Գորշ գայլերն» այժմ շարժվում են ֆաշիստական արահետներով, տարածելով իրենց միլիտարիստական, հակամարդկային և այլ ազգերին տիրապետելու պանթուրքական գաղափարները: Մարդիկ պետք է զգոն ու պատրաստ լինեն, որպեսզի ժամանակին կանխեն «գորշ գայլերի» արյունոտ խրախճանքները, որքան էլ նրանք քողարկված լինեն, որտեղ էլ լինեն:

**ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների թեկնածու

# ԱՍՈՒՅԹՆԵՐ

Անգամ աստվածները չեն կարող սիրել և, միաժամանակ, խելամիտ լինել:

Ավելի լավ է սխալվել Պլատոնի հետ, քան ճիշտ դատել մյուսների հետ:

Արծաթը էժան է ոսկուց, ոսկին՝ պատվից:

Գաղափարների համար ոչ մեկը չըպետք է պատժվի (հռոմեական իրավունքի հիմնադրույթներից):

Գայլի հետ ապրես՝ գայլի նման կոռնաս:

Ես կարծում եմ, որ Կարթագենը պետք է կործանվի (Հռոմի սենատոր Կատոն Ավագի խոսքերը, որն իր բոլոր ճառերն ավարտում էր այդ բառերով՝ պատերազմի կոչ անելով Հռոմի մրցակից Կարթագենի դեմ: Արտահայտությունն օգտագործվում է նշելու համար, որ խոչընդոտը պետք է մեջտեղից վերացնել):

Երբ որոտում են թնդանոթները, օրենքները լռում են:

Երկրի պորտը (շատ կարևոր անձնավորության կամ առարկայի մասին):

Երջանկությունը բերում է ընկերներ, դժբախտությունը փորձում է նրանց:

Հաննիբալը դռների մոտ է (այն է՝ վըտանգը մոտ է):

Հերկուլեսին ճանաչում են ոտքից (այն է՝ մի մասով ամբողջն են ճանաչում):

Հիշիր, մարդ, որ դու փոշի ես ու փոշի ես դառնալու:

Նամակները չեն կարմրում:

Որտեղ մեղր, այնտեղ՝ թույն:

Ջրհեղեղի վկա (հին հայացքների տեր մարդ):

Փողը հոտ ունի՞— Վեսպասիանոս կայսրը հարկ էր վերցնում անգամ քաղաքային զուգարանների տերերից: Երբ նրա որդին՝ Տիտոսը, նախատում է հորը դրա համար, վերջինս այս հարցով է պատասխանում:

Օրը կորցրի.— Տիտոս կայսեր խոսքերը այն օրվա մասին, որի ընթացքում ոչ մի բարի գործ չի արել:

ԼԻԼԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

# ՀԵՔԻԱԹ ԳՈՐՇ ՄՈՒԿԻԿԻ ՄԱՍԻՆ

Նկարները՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ



Կար, չկար մի գորշ մուկ, ավելի ճիշտ՝ մի փոքրիկ գորշ մուկիկ, որովհետև երբ ասում ես մուկ՝ չես կարող երևակայել, որ նա ունի խոշոր, ձիթապտղի պես սև աչքեր, մուգ, գորշավուն մաշկ, այնքան փայլուն, որ գիշերը լույսի տակ առկայծում է, և նուրբ մի պոչիկ՝ ոչ այնքան երկար:

Ուրեմն այսպես. այս փոքրիկ մուկիկը աշխարհում ամենից շատ վախենում էր գորշությունից: Ուղղակի տանել չէր կարողանում, և շատ էր տխրում ամեն անգամ հայելու մեջ նայելիս. «Տե՜ր աստված, ինչ գո՜րշ եմ ես»,— հոգոց էր հանում նա, և կլոր աչքերը լցվում էին արցունքով:

Մի օր մուկիկը ջարդեց տան եղած բոլոր հայելիները և որոշեց մոռանալ իր գորշ լինելը: Հաջորդ օրը նա գնաց խանութ և գնեց բազմագույն կերպասներ՝ իր

---

● Չմարզված մարդը ուժերի նվազագույն ծախսման դեպքում 17 օր կարող է ապրել քաղցած (հազվադեպ՝ 26 օր):

Չին առանց ուտելու, քաղցած կարող է ապրել 25, իսկ առանց ջրի՝ 17 օր: Իսկ եթե կերակրեն և ջուր չտան, նա կապրի ընդամենը 5 օր: Այս երևույթը օրինաչափ է, քանի որ սնունդը մարսելու համար շատ հեղուկ է անհրաժեշտ: Խլուրդը առանց սնվելու կարող է ապրել 2 ամիս:

Քաղցի նկատմամբ ավելի դիմացկուն են միջատները. օրինակ՝ փայտոջիլը առանց սնվելու ապրում է 6, իսկ սարդը՝ 12 ամիս:

● Անգլիական բնախույզ Պիտեր Սկոտը ավարտեց աշխարհում առաջին և առայժմ միակ ջրադիմացկուն գիրքը: «Ջկնաբանի տեղեկագիրը» տպագրված է հատուկ պոլիէթիլենային «թղթի» վրա, որը ջրասուզակները կարող են կարդալ ջրի հատակում և միաժամանակ բնական պայմաններում ուսումնասիրել ջրային կենդանիների կյանքը:

● Օձերն իրենց մաշկի տակ ունեն դատարկ տարածություն, որը ջերմամեկուսիչ օդային բարձիկի դեր է կատարում: Այն պաշտպանում է օձերին ջերմային հարվածից և այրվածքներից:

● Ամերիկյան մանրէաբանների մի խումբ ուսումնասիրություններ է կատարել մետաղյա դրամների և թղթադրամների աղտոտվածությունը որոշելու նպատակով: Պարզվել է, որ թղթադրամների 42, իսկ մետաղյա դրամների 13 տոկոսը իրենց վրա կրում են մաշկային և աղիքային հիվանդությունների տարածման մանրէներ:

● Երևանի բուսաբանական այգում մի թուփ կա, որը կոչվում է ռուս տոքսիկոդենդրոն (թույնի ծառ): Սա խիստ թունավոր է, նրան ձեռք տալ չի կարելի: Երբ մարդիկ անզգուշաբար ձեռք են տալիս դրա տերևներին կամ ցողունին, ապա հեշտությամբ թունավորվում են: Թունավորվածի ձեռքը սարսափելի ուռչում է, և անտանելի ցավեր են առաջանում:

սիրած վարդագույնից մինչև սև, բոլոր գույները երկուսից բացի՝ գորշ և մուգ կապույտ (մուգ կապույտը նրան կոպտացնում էր):

Ամբողջ օրը լսվում էր կարի մեքենայի ձայնը: Մուկիկը նույնիսկ հարևանի տուն չգնաց սրճելու: Երեկոյան զգեստները պատրաստ էին՝ ֆանտաստիկ ու ճամուկ: Երբ հագավ և դուրս եկավ տնից՝ ոչ-ոք չէր կարող ենթադրել անգամ, որ մեր փոքրիկ գորշ մուկիկը կարող է այդքան հրապուրիչ լինել: Նրան հաճոյախոսում էին ամեն քայլափոխի, ջանում էին գրավել նրա ուշադրությունը, առաջարկում էին ուղեկցել, նույնիսկ սկսեցին ծաղիկներ նվիրել... Հիմա դժվար էր մուկիկին գորշ անվանել: Նա ինքն էլ այդ մասին շուտով մոռացավ:

Ժամանակ անցավ: Նոր, խայտաճամուկ զգեստների փայլը խամրեց, և գույները խունանալով՝ գորշացան: Մուկիկն այնքան զբաղված էր տարբեր հրավերներով, որ չնկատեց այդ: Մի օր էլ, երբ քայլում էր երջանիկ ժպիտը դեմքին՝ մեկը ձայնեց.

— Տեսեք, ինչ ծիծաղելի է այս գորշ մուկը հնամաշ շորերով:

Մուկիկը սկզբում չհասկացավ լսածը: Անհանգստությունից նրա փոքրիկ սրտիկն սկսեց ավելի արագ բաբախել: Հետո բառերը սկսեցին տեղ հասնել, և ամենաարագը, իհարկե, տեղ հասավ գորշ բառը... «Գորշ, գորշ մուկ, նա ինձ ասաց գորշ մուկ... Օ՜հ, ինչ դժբախտ եմ ես»,— մտածեց նա ու հեկեկոցն ատամներով ամուր սեղմած՝ վազեց տուն: Տանը հայելիներ չկային և պետք էլ չէր, առանց այդ էլ ամեն ինչ պարզ էր: Մուկիկն ազատություն տվեց սիրտը կտրատող արցունքներին և այնքան լաց եղավ՝ մինչև քնեց: Երազին մի տեսիլք հայտնվեց, ավելի ճիշտ՝ մի ձայն էր՝ մեղմ ու բարի. «Փոքրիկ մուկիկ, հանգստացիր և ոչնչից մի վախեցիր: Գորշն էլ գեղեցիկ գույն է, իսկ գորշությունը գույնի հետ կապ չունի»: Առավոտյան մուկիկն արթնացավ խաղաղված և աշխատեց այդ մասին այլևս չմտածել:

Ժամանակ անցավ: Պարզվեց, որ այն տեսիլքն իրական էր: Դա մի ուրիշ մուկ էր, հոգատար և ուշադիր: Նրանք հանդիպեցին, նայեցին միմյանց աչքերի մեջ և ժպտացին:

— Իմ սիրունիկ, գորշ մուկիկ,— ասաց մուկը, և մեր մուկիկն ի պատասխան ամոթխած ժպտաց: Առաջին անգամ նա չվախեցավ գորշ բառից, ընդհակառակը, դա նրան շատ բնական և նույնիսկ գեղեցիկ թվաց:

---

Ամենաթունավոր ծառերը ստրիխնին ցեղի ներկայացուցիչներն են: Դրանցից պատրաստված թույնը արևադարձային երկրների բնիկները քսում են իրենց նետերին: Թունավորված նետով վիրավորված մարդը կարճ ժամանակից հետո մահանում է:

● Հայաստանում էլ կան թունավոր բույսեր: Դրանցից հայտնի են կզմուխը, մըրտավարդը, գայլահատը, մահամորմը, որոշ սնկեր, ընձախոտը, ագռավաչքը, շնդեղը, գինազոխը, մոլեխինդը և այլն:

● 1848 թվականի մարտի 29-ի գիշերը, հանկարծ դադարեց Նիագարա (ԱՄՆ) վիթխարի ջրվեժի շառաչյունը: Նիագարա Ֆոլս փոքր քաղաքի բնակիչները զարթնեցին անսովոր լռությունից: Լապտերներով ջրվեժին մոտեցած մարդիկ տեսան միայն մերկացած ժայռեր: Ջուր չկար:

Իսկ հաջորդ առավոտյան ջուրը կրկին հոսեց: Պարզվեց, որ մարտի 29-ին բարձրացած ուժեղ քամին տեղաշարժել էր Էրի լճի սառույցները, որտեղից սկիզբ է առնում Նիագարան, և տոննաներով սառույցները փակել էին գետի ակունքը




Բուֆալո քաղաքի մոտ: Սառցե պատվարը պահպանվել էր մեկ օրից ավելի:

Կազմեց ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ



ՆԻԿՈՂԱՅՈՍ ՔՈԹԱՆՋՅԱՆ «ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.